Վարդան Արևելցու «Պատմութեան» աղբյուրները [The Sources of Vardan Arevelts'i's *History*], from *Banber Matenadarani*, volume 14 (1984), pp. 187-194, in 28 pdf pages.

ՓԱՅԼԱԿ ԱՆԹԱԲՅԱՆ

# ՎԱՐԴԱՆ ԱՐԵՎԵԼՑՈՒ «ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

*Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան»[1] աշխատությունն, ընդհանրապես, հայ պատմագրության կարևոր հուշարձաններից է. մեծ է հատկապես նրա աղբյուրագիտական նշանակությունը: Իբրև «տիեզերական պատմություն» այն անհրաժեշտաբար առնչվել է բազմաթիվ սկզբնաղբյուրների, և ըստ այդմ ստեղծվել է բնագրական այնպիսի մի համահավաք երկ, որի մեջ իրենց մասն ու բաժինն են ունեցել հայ պատմագրության գրեթե բոլոր նախընթաց արժեքավոր հուշարձանները:*

*Ընդհանուր առմամբ «Պատմութեան» աղբյուրները ճշտված են: Բանասերներին վաղուց է հայտնի, որ Վարդան Արևելցին օգտագործել է իրեն նախորդող «երիցագույն» պատմիչների աշխատությունները: Առանձին դեպքերում դրանք սոսկ թվարկվել են, երբեմն բավարար են համարվել տողատակերում կամ ծանոթագրությունների մեջ արված հղումները և միայն հազվադեպ հաստատվել բնագրական համառոտ զուգահեռներով[2]: Քննական բանասիրական խոսք ասելու որոշակի փորձեր են արվել՝ պատմական և աղբյուրագիտական ավելի ստույգ իրողություններ պարզելու և հաստատելու համար: Այս տեսանկյունից առավել ուշադրավ և օգտակար աշխատանքներ են կատարել մասնավորապես Մ. Բրոսեն և Ժ. Միլդերմանսը[3]: Մասնակի առումով հետաքրքրական են նաև Տ. Գույումճյանի ջանքերը Մխիթար Անեցու աշխատությունից Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» մեջ պահպանված մի հատվածի առնչությամբ[4]:*

---

1 *«Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի», Վենետիկ, 1862:*

2 *Մանրամասն տե՛ս հատկապես* Եվսեբիոս Կեսարացի. *Ժամանակականք երկմասնեայ, մասն Ա և Բ, Վենետիկ, 1818, տողատակի ծանոթագրությունները՝ բազմաթիվ էջերում:*

*M. F. Brosset*, Additions et éclaircissement à l'Histoire de la Géorgie depuis l'Antiquité jusqu'en 1469 de J.-C., St.-Pétersbourg, 1857.

Analyse critique de la Всеобщая История de Vardan, par *M. Brosset*, St.-pétersbourg, 1862, p. 2, 9, 13—24.

*E. Dulaurier*, Les Mougols d'après les historiens arméniens. extrait de l'Hisfoire universelle de Vardan. Journal Asiatique, 1860, Octobre, Novembre, p. 273—322.

«Всеобщая История Вардана Великого», перевод Н. Эмина (с примечаниями и приложениями), M., 1861. *Առաջաբանը՝ էջ XVI—XX, ծանոթագրությունները՝ 3—189:*

*«Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի, լուսաբանեալ, ի Վենետիկ, 1862, Առաջաբանը՝ էջ է և տողատակ ծանոթագրությունները՝ բազմաթիվ էջերում:*

*J. Muyldermans*, La domination arabe en Arménie, Louvain- Paris, 1927, *էջ 32—37 և տողատակի ծանոթագրությունները՝ բազմաթիվ էջերում:*

Կիրակոս Գանձակեցի. *Պատմություն հայոց, աշխատասիրությամբ* Կ. Մելիք-Օհանջանյանի, *Երևան, 1961, Առաջաբանը՝ էջ ԿԱ—ԿԵ:*

*D. K. Kouymjian*, Mxit'ar (Mekhitar) of Ani on the rise of the Seljuqs, "Revue des études arméniennes, Nouvelle Série, T. VI, Paris, 1969. *Նույնի՝ Մխիթար Անեցին ղազնավյանների և սելջուկյանների մասին, «Լրաբեր» (հաս. գիտ.), № 4, Երևան, 1972, էջ 74—84:*

3 *Տե՛ս նրանց նշված աշխատությունները:*

4 *Տե՛ս նրա նշված հոդվածները:*

Այդուհանդերձ, պատմագրական նման մի աշխատության աղբյուրագիտական ավելի համակողմանի ու մանրազնին քննությունը մնում է անհրաժեշտություն, որովհետև՝ ա) նշված աղբյուրները լրացման ու կրկին ճշգրտման ենթակա են, բ) մի քանի աղբյուրների օգտագործված լինելու հարցը հարկ է վերանայել, գ) միայն հարևանցի ակնարկ է եղել (բացառությամբ Մխիթար Անեցու երկի նշված հատվածի վերաբերյալ դիտողությունների) այն աղբյուրների հնարավոր օգտագործման մասին, որոնք առ այսօր մեզ չեն հասել, դ) չեն զատորոշված ըստ իրենց մայր հասցեի այն բոլոր հատվածներն ու տողերը, որոնք Վարդան Արևելցին անմիջաբար փոխառել կամ քաղել է բազմաթիվ աղբյուրներից։ Բացի այդ, դրեթե ոչինչ չի ասված այն մասին, թե Վարդան Արևելցին ինչպե՞ս է վերաբերվել իր աղբյուրներին, օգտագործման ի՞նչ սկզբունք ու եղանակ է կիրառել, բնագրական ի՞նչ փոխադարձ լրացումներ կամ ճշտումներ հնարավոր կլինի կատարել նրա և առնչվող աղբյուրների մեջ, հայ և այլ ժողովուրդների մատենագրության համար աղբյուրագիտական ու պատմական ի՞նչ նշանակություն և արժեք կարող են ունենալ նրա մեծաքանակ բանաքաղությունները և այլն, և այլն. սրանք հարցեր են, որ գիտական լուրջ պատասխանի են կարոտ։

Հասկանալի է, նման բազմաթիվ ու բազմազան հարցերի համատեղ քննությունը մի հոդվածի սահմաններում պարզապես անհնարին է։ Ուստի շատ խնդիրներ անհրաժեշտաբար թողնելով այլ առիթի, այստեղ ի մասնավորի, բնագրական տարբերակային և շոշափելի փաստերի հիման վրա, կփորձենք ավելի հստակ և ստույգ հաստատել այն զուտ պատմագրական բնույթի աղբյուրները, որոնցից Վարդան Արևելցին նյութեր է քաղել անմիջականորեն[5]։ Դեռևս անհայտ, այսպես կոչված «թաղված» բազմազան աղբյուրների բացահայտումը ևս թողնելով այլ առիթի, քննության նյութ ենք դարձրել արդեն Վարդան Արևելցու հիշյալ աշխատության և մեզ՝ հասած մի քանի հայերեն սկզբնաղբյուրների առնչության կարևոր հարցը[6]։

Միանգամայն որոշ է, որ Վարդան Արևելցին ձեռքի տակ ունեցել է բազմաթիվ ու տարատեսակ սկզբնաղբյուրներ։

Հիմնական աղբյուրներից մեկը, մանավանդ սկզբի էջերի համար, Աստվածաշունչն է եղել։ Տվյալ դեպքում զանց ենք առնում նշել առկա աղբյուրագիտական առնչությունները այն պարզ պատճառով, որ դրանց գոյությունը առանց այդ էլ, տարակուսելի չէ և նկատվում է դյուրությամբ։ Մնացած աղբյուրների մասին խոսք կլինի առանձին-առանձին, ըստ նրանց ժամանակագրական հաջորդականության։

Այս առումով Աստվածաշնչից հետո հնագույնը Եվսեբիոս Կեսարացու «Ժամանակագրութիւն»-ն է[7]։ Թեև այն միջնորդաբար Մովսես Խորենացու, Ուխտանեսի, Ասողիկի պատմագրական համապատասխան երկերի միջոցով քանիցս

---

5 Ծրագրել ենք մոտիկ ապագայում կազմել և հրատարակության հանձնել Վարդան Արևելցու հիշյալ աշխատության քննական բնագիրը։ Բանասիրական-աղբյուրագիտական զգալի աշխատանք կատարել ենք արդեն, որը թույլ է տալիս ասելու, թե այդ առիթով ավելի լայն հնարավորություններ կունենանք անդրադառնալու գիտականորեն կարևոր բոլոր հարցերին։ Ըստ այդմ էլ այստեղ զանց ենք առնում նշելու այն աղբյուրագիտական-բնագրական առնչությունները, որոնք առկա են Վարդան Արևելցու սույն աշխատության և նրա այլ աղբյուրների միջև։

6 Տե՛ս Փ. Անթաբյան, Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» կոչած աղբյուրները, «Սիոն», Ա-Բ, 1980, էջ 24—30։

7 Եւսեբիոս Կեսարացի, Ժամանակականք երկմասնեայ, մասն Ա.։

նյութ է մատակարարել Վարդան Արևելցուն, սակայն որոշ է դառնում, որ նա դրանից օգտվել է նաև անմիջաբար։ Միջանկյալ ասենք, որ, անտարակույս, որոշակի դժվարություն է ներկայացնում ինչպես սույն, այնպես էլ մյուս մի քանի հիմնական սկզբնաղբյուրներից անմիջաբար արված քաղվածքները զատորոշելը՝ ըստ իրենց բուն պատկանելության, որովհետև դրանք երբեմն նույնաբար, բառացի փոխանցվել են հետագա մեկ կամ ավելի աղբյուրների։ Ըստ այսմ, աղբյուրագիտական լայն ու մանրակրկիտ քննությունների կարիք է զգացվում ճշտելու համար, թե «Հաւաքումն պատմութեան» այսինչ հատվածը կամ համառոտ տեղեկությունը ուղղակի մայր աղբյուրի՞ց է առնված, թե՝ միջնորդաբար հետագա մեկ այլ աղբյուրից։ Հաշվի առնելով այս հանգամանքի լրջությունը և գիտական կարևորությունը, յուրաքանչյուր դեպքում ջանացել ենք բծախնդիր լինել առավելագույն չափով։

Այս հիմքով էլ ընտրված են բոլոր այն մեծ ու փոքր հատվածները, որոնք ըստ անհրաժեշտության այստեղ բերվելու են զուգահեռ համեմատությունների համար։ Այսպես ենք վարվել Եվսեբիոս Կեսարացու «Ժամանակագրութեան»՝ Վարդան Արևելցուն իբրև անմիջական աղբյուր ծառայելու առնչությամբ։ Այսպես.

Եվսեբիոս Կեսարացի

Կամիմ այսուհետև յայտնանէ փոխել ի փիւնիկեցւոց մատեանսըն... Յորս գրեալ է՝ թէ տաճարն Երուսաղէմի շինեցաւ ի Սողոմոնէ արքայէ կանխագոյն ամօք ճԽԳ-իւք (143), և ամսովք ութիւք՝ քան զշինել տիւրացւոց զԿարքեդոն... Զբռնացեալսն Երուսաղէմացւոց զՍողոմոնէ ասեն առաքեալ առակս առ Իրովմոս...։ Յանձն առեալ Իրովմայ, և ոչ լեալ բաւական առեղծուլ զառակսն, բազում ինչ յընչից ի պատժոց տուժս ծախեալ։ Անդ դպիր ոմն Աբդամանոս անուն՝ այր կորովի, զարկեալ առասպելսն Սողոմոնի լուծանել. միանգամայն և այլ ևս առ նոյն արկանել. զորս չառեղծոյր Սողոմոն. և բազում ինչ Իրովմայ տուժէր։ (էջ 173, 176—177)։

Վարդան Արևելցի

Կայ ի գիրս փիւնիկեցւոցն, եթէ տաճարն յԵրուսաղէմ շինեցաւ հարիւր քառասուն և երեք ամօք յառաջ քան զշինելն Տիւրացւոցն զԿարքեդոն. և գրեն առակս ինչ առ միմեանս Սողոմոն և Քիրամ. և ոչ կարէր Քիրամ լուծանել զՍողոմոնին. բայց գտաւ այր ոմն, Աբդամանոս անուն ի Տիւրոս՝ որ կարողանայր առեղծուլ, այլ և գրէր առ Սողոմոն, և տարակուսէր Սողոմոն։ (էջ 23)։

Նույնությունն ակներև է։ Միայն թե Վարդան Արևելցու հատվածում Աբդամանոսը դարձել է Աբդամանոս, Իրովմը՝ Քիրամ։ Պարզ է, որ առաջինը Դ և Գ տառերի գրչական շփոթության, իսկ երկրորդը՝ Իրովմին Աստվածաշնչի Քիրամի[8] հետ նույնացման արդյունք է։

[8] Գ Թագաւորութեանց, գլ. Թ., 11։

Պատկերը գրեթե միևնույնն է նաև հետևյալ դեպքում։

**Եվսեբիոս Կեսարացի**

Քանզի է Մովսիսի յանապատին խ ամ և Յասովայ ԻԷ, յետ որոյ դատաւորացն և այլազգեացն ՆԾ. որպէս առաքեալ ասէ. և Դատաւորաց գիրք նմին դաւանեն. յետ որոց Սամուէլի և Սաւուղայ խ ամ, ապա և Դաւթի խ, և Սողոմոնի Դ. մինչ ի տաճարին կազմած. և միանգամայն ամենայն Ո (600)։ (էջ 164—165)։

**Վարդան Արևելցի**

...քառասուն ամ Մովսեսին, քսան և եօթն ամ Յեսուայն, որ է վաթսուն և եօթն ամ. և չորեքհարիւր և յիսուն ամ դատաւորացն, ծառայութեամբ այլազգեաց՝ որ է հինգհարիւր և եօթնետասան. յետ որոյ Շմուէլ և Շաւուղ քառասուն ամ, և քառասուն ամ Դաւթի, լինի իննսուն և եօթն, և չորս ամ Սողոմոնին, և լինին միանգամայն ամք վեցհարիւր և մի։ (էջ 23)։

Բացահայտ է, որ Վարդան Արևելցին իր սկզբնաղբյուրից օգտվել է բառացի։ Տարբերությունն այն է լոկ, որ Վարդան Արևելցու մոտ «Շմուէլ և Շաւուղ» է, փոխանակ՝ «Սամուէլի և Սաւուղայ», իսկ տարեթվերի ընդհանուր գումարը՝ 601, փոխանակ՝ 600-ի։ Շ-ի կիրառությունը Ս-ի փոխարեն առրական արտասանության դրսևորում է, որը, թերևս, այս դեպքում վկայում է այն մասին, թե Վարդան Արևելցու ձեռքի տակ եղած օրինակում բնագիրն այդպիսին է եղել։ Ինչ վերաբերում է տարեթվերի գումարին, ճշմարիտն այն է, որ Եվսեբիոսի հատվածում 600 է գրված սխալմամբ, քանի որ այնտեղ նշված տարեթվերի գումարը ևս հավասար է 601-ի։ Իսկ դա ըստ երևույթին, արդյունք է այն բանի, որ այնտեղ ևս նախապես գրված է եղել ՈԱ. (601) և հետագայում ընդօրինակությունների ժամանակ Ա.-ն դուրս է ընկել[9]։

Մեր եզրակացությունը ավելի ամրապնդելու համար բերենք ևս մեկ զուգահեռ.

**Եվսեբիոս Կեսարացի**

Արտաշէսի ամք ԽԱ։ Առ սովաւ Եզր... Այդ և Նեէմիա տակառապետ ճանաչէր, որ հրամանաւ թագաւորին էջեալ յերկիրն Հրէաստանի՝ շինէր զԵրուսաղէմ, և պատէր զրաղաքն պարսպօք... Դարեհ ամս ԺԹ։ Արտաշէս ուշեղ ամս Խ։ Ովքըսոս ամս ԻԶ։ Արսէս ամս Դ։ Դարեհ ամս Զ։ Յետ որոց Աղեք-

**Վարդան Արևելցի**

Արտաշէս երկայնաբազուկ քառասուն և մի ամ, առ սովաւ Եզրաս և Նոյեմի տակառապետ եկին յԵրուսաղէմ և շինեցին զպարիսպն։ Դարեհ հարճորդի ամս իննևտասան. Արտաշէս, ամս քառասուն, առ սովաւ Իսքեր։ Արտաշէս Ոքոս, ամս չորս. Դարեհ Արշամայ, ամս վեց. զոր սպան Աղեքսանդր, և

9 Եվսեբիոսը 600 տարիները բաժանել է 5 ազգերի միջև, յուրաքանչյուրին՝ 120։ Բայց տրված տարեթվերի գումարը, 1-ով ավելի է։ Հնարավոր ենք համարում նաև այն, որ և՛ Եվսեբիոսի, և՛ Վարդան Արևելցու մոտ Սողոմոնի Դ տարին նախապես Եվսեբիոսի բնագրում եղել է Գ տարի, հետագայում Գ և Դ տառերի շփոթություն է տեղի ունեցել։

սանդրոս Մակեդոնացի եբարձ զտէրութիւնն պարսից և թագաւորեաց ամս Զ... ՃՂԷ: Յետ Աղէքսանդրի վախճանելոյ՝ Եգիպտոսի և Աղէքսանդրիայ քաղաքի թագաւորեցին այսոքիկ, ա. Պտղոմէոս Ղագոսեայ ամս Խ. բ. Պտղոմէոս Փիղադեղփոս ամս ԻԸ: Առ սովաւ երրայեցւոց գիրք սուրբք ի յոյն լեզու թարգմանեցան, և յԱղէքսանդրիա քաղաքի և մատենից տունս եդան: գ. Պտղոմէոս Եւերգետէս ամս ԻԴ: դ. Պտղոմէոս Փիղապատոր ամս ԻԱ: Ե. Պտղոմէոս Եպիփանէս ամս Իբ : զ. Պտղոմէոս Փիղոմետոր ամս ԼԴ: Առ սովաւ թագաւորեաց տարւոց Անտիոքոս... թէ զխարդ Անտիոքոս զազգն Հրէից ի հեթանոսութիւն դարձուցանել բռնադատէր... (էջ 190):

եկեաց ինքն այլ ևս ամս վեց... Զկնի որոյ թագաւորեաց Պտղոմէոս յԵգիպտոս, որ Լագոսեանն կոչի, ամս քառասուն. Պտղոմէոս Փիլադելփոս, ամս երեսուն և ութ. առ որով թարգմանեցան Հրէից գրեանն: Պտղոմէոս Եւերգետէս, ամս քսան և չորս, Պտղոմէոս Փիլոպատոր, ամս քսան և մի, Պտղոմէոս Եպիփանէս, ամս քսան և երկու: Պտղոմէոս Փիլոմատոր, ամս երեսուն և երեք. առ որով Անտիոքոս Եպիփանէս նեղէր զՀրեայսն, որ թագաւորեաց ամս մետասան: (էջ 27—28):

Ինչպես տեսնում ենք, անմիջական առնչությունն ակնհայտ է: Սոսկ տարեթվերի փոքր անհամապատասխանություն կա: Այս դեպքում գրչագրական հնարավոր վրիպակներից բացի, կարծում ենք, ենթադրելի է նաև հետևյալը. սույն հատվածը տարբեր խմբագրություններով առկա է նաև մի քանի այլ հեղինակների երկերում[10]: Ընդհանրություններ ամենից ավելի նկատելի են Ասողիկի երկում առկա հատվածի համեմատությամբ: Վարդան Արևելցին ձեռքի տակ ունենալով նաև հիշյալ հեղինակների երկերը, հավանաբար, թվական փոփոխություններ է կատարել իր բնագրում, գուցե և իր ու հիշյալ հեղինակների տրամադրության տակ եղել է Եվսեբիոսի «Ժամանակագրութեան» մեկ այլ, քիչ տարբեր ընդօրինակություն, ինչ որ նույնչափ հավանական ենք համարում[11]:

Կարելի է վկայակոչել բնագրական այլ այսօրինակ բառացի նմանություններ ևս, սակայն այսքանը լիովին բավական է հաստատելու, որ Եվսեբիոսի «Ժամանակագրութիւն»-ը Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» համար իրապես իբրև անմիջական սկզբնաղբյուր է ծառայել:

Հարկ ենք համարում միջանկյալ նշել հետևյալը: Վարդան Արևելցին տարբեր առիթներով հիշատակություններ է թողել այն մասին, որ ինքը այս կամ

10 Համա. Մովսես Խորենացի. Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 14—20: Ա. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան 1944, էջ 358—359, 365, 370 և այլն: Թովմա Արծրունի. Պատմութիւն տանն Արծրունեաց, ի լոյս էած Ք. Պ., Ս. Պետերբուրգ, 1887, էջ 6—9, 14—20 և այլն: Սամվել Անեցի. Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 5—32 և այլն:

11 Մ. Աբեղյանի կարծիքով, Սամվել Անեցին օգտագործել է Եվսեբիոսի «Ժամանակագրութեան» մեզ հասած ձեռագիր օրինակը (հատ. Բ, էջ 233): Մինչդեռ Սամվել և Վարդան Արևելցու քաղած որոշ հատվածներում տարբերություններ կան, որոնք, կարծում ենք, նաև տարբեր ընդօրինակություններից բխած լինելու արդյունք են:

այն տեղեկությունը, միտքը հաղորդում կամ ճշտում է ըստ Արիստոտելի, Եփրեմ Ասորու, Եպիփան Կիպրացու, Ննանոսի, Լուկիանոս ոմն փռանկի, Սոկրատ պատմիչի[12]: Սակայն այդ մանր տեղեկությունները, որոնք տվյալ դեպքում ավելի կրոնափիլիսոփայական, քան պատմական բնույթի են, հակառակ տրված անունների իսկ հիշատակության դժվար է հղել ստույգ հասցեի: Միջնադարյան բնագրերը, ինչպես հայտնի է, լի են նման հիշատակություններով, որոնք կարող էին մեկը մյուսին փոխանցվել միջնորդաբար և անպայման չբխել մայր սկզբնաղբյուրից: Այս դեպքում ևս կարող էր տեղի ունենալ նույնը, ուստի և առանց վերապահության չենք կարող ասել, որ Վարդան Արևելցին այս առիթով վերոհիշյալ հեղինակների և այլոց (որոնց անունները չի հիշում) երկերը ձեռքի տակ ունեցել է իբրև անմիջական աղբյուր, թեև չի բացառվում նաև այդ հնարավորությունը:

Վարդան Արևելցին Հայաստանում քրիստոնեության տարածման, Գրիգոր Լուսավորչի վարքի ու գործունեության, առնչակից այլ խնդիրների վերաբերյալ իր նյութերը քաղել է ոչ թե Ագաթանգեղոսի, այլ Հովհան Մամիկոնյանի (Զենոբ Գլակ) աշխատությունից: Թեպետև նա Ագաթանգեղոսին հիշատակել է իբրև աղբյուր, սակայն պարզվում է, որ դա Սեբեոսի երկից է գալիս[13]: Վարդան Արևելցու այս կապակցությամբ վկայակոչած մանրամասները, ըստ մեծի մասին, պակասում են մյուս հեղինակների մոտ, սակայն առկա են Հովհան Մամիկոնյանի երկում[14]: Միայն Ուխտանեսի աշխատության մեջ են պահպանված դրանց առնչվող որոշ տեղեկություններ, որոնք, անտարակույս, քաղված են նույնպես «Պատմութիւն Տարօնոյ» երկից[15]:

Վարդան Արևելցու երկում առկա որոշ տարբերություններ թեև միաժամանակ վկայում են, որ նա նաև բանավոր կամ գրավոր այլ աղբյուր էլ է ունեցել[16], սակայն, տարակույս լինել չի կարող, որ անպայման Հովհան Մամիկոնյանի աշխատությունից է օգտվել ուղղակիորեն, մանավանդ, երբ վերոհիշյալ մանրամասներից բացի, նկատի ենք ունենում Դեմետրեի և Գիսանեի հայտնի զրույցը, որն այստեղ պարզապես համառոտաբար վերապատմված է ըստ այնմ: Կան և բառացի քաղվածքներ, ինչպես հետևյալը.

| Հովհան Մամիկոնյան | Վարդան Արևելցի |
|---|---|
| ...որ թէպէտ և բազում անգամ խնդրեաց սուրբ Գրիգոր զնշխարս սուրբ կարապետին, ոչ էառ յանձն (Ղևոնդ—Փ. Ա.) տալ մինչև հրաման ի տեառնէ հասանէր ի գիշե- | ...Եւ հայցեաց սուրբն Գրիգոր (զնշխարս Կարապետին Յովհաննու-Փ. Ա.), և ոչ կամէր տալ, մինչև առ հրաման ի հրեշտակէն սրբոյ սուրբն Ղևոնդ, որ ետ ապա |

12 Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 4, 7, 24, 33, 44:

13 «Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն», Երևան, 1939, էջ 2:

14 Հմմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ. էջ 36—38: Հ. Մամիկոնյան, Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 68—74:

15 Ուխտանէս Եպիսկոպոս, Պատմութիւն հայոց, Վաղարշապատ, 1871, էջ 78—79, 81—83:

16 Մեր համեմատությունները միաժամանակ ցույց են տալիս, որ Վարդան Արևելցու «Հավաքումն պատմութեան» աշխատության և Գրիգոր Լուսավորչին նվիրված իր իսկ ներբողի միջև փաստագրական փոխադարձ առնչություններ կան: Ներբողը հորինված է ավելի վաղ, ուստի և հավանաբար, ծառայած է որպես աղբյուր: Հմմտ. «Սոփերք հայկականք», Ե., Վենետիկ 1885, էջ 39—48:

րին վերջնումն բաժանել զկէսն և տալ ցնա... Եւ նոցա զնշխարս Աթանագինէի վկայի... Տայր և որբոյն Գրիգորի երկու լուսաւոր ակունս, զոր տուեալ էր նմա Համմայ Հայրապետն։ ...Զի սեւ էին և գիսաւորք... ...Զի կռոցն, որ յայսմ տեղւոջ էին, պատճառ այս է. Դեմետր և Գիսանէ իշխանք էին Հնդկաց և եղբարք ցեղով. և փախուցեալ ի թագաւորէն Հնդկաց, հալածեցան և եկին մինչև յաշխարհս յայս։ Եւ իբրև եկին առ թագաւորն Հայոց Վաղարշակ, և նա ետ զերկիրն Տարաւնոյ յիշխանութեամբ նոցա...։ Եւ յետ հնգետասան ամի եսպան թագաւորն զերկոսեանն և զտեղիսն իշխանութեամբ ետ որդոց նոցա... (էջ 76—78, 107—108)։

երկու լուսաւոր ակունս, զոր եր տուեալ նմա Հայրապետն Համմայ և զնշխարս սրբոյն Աթանագինեայ... Զոր բերեալ սերմանէր յերկիրս Հայոց, զհաստատեալն յԱշտիշատ պահելով, ի տեղիս Դեմետրեայ և Գիսանեայ, երկուց եղբարց հնդկաց իշխանաց, որք եկին առ Վաղարշակ արքայ, և զկնի հնգետասան ամի սպանեալ ի տեղւոջն, որոց որդիքն ժառանգեցին զՏարօն. և էին գիսաւորք և զեռեւս կերպարանին ոմանք՝ ծամս պահելով...։ (էջ 39)։

Մնացածը, կարծում ենք, պարզ է։

Վարդան Արևելցու ամենահիմնական աղբյուրներից է Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը»-ը։ Նրան է դիմել բազմաթիվ առիթներով, հաճախ բառ պատշաճի համառոտելով ընդգրկվելիք պատմական նյութը, երբեմն էլ բառացի քաղվածքներ կատարելով։ Քիչ չեն և այն դեպքերը, երբ հետագա պատմիչների երկերի միջոցով են նրանից նյութեր փոխանցվել Վարդան Արևելցու հիշյալ աշխատության մեջ։ Մենք թեև հանգամանորեն ճշտել ու զատորոշել ենք այս երկու բնագրերի փոխադարձ բոլոր առնչությունները, բայց դրանց մասին ևս ավելի մանրամասն խոսք կլինի հետագայում։ Այս նկատառումով էլ կփորձենք մատնանշել միայն ուղղակի առնչություններից՝ բառացի քաղվածքներից մի քանիսը, որպեսզի առավել ստույգ ու ակներև նկատվի, որ Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը»-ը Վարդան Արևելցու սույն աշխատության իրոք անմիջական աղբյուրներից է։

Մովսես Խորենացի

Եւ միայն զառաջին որդին իւր, որ կոչէր Արշակ, պահէ առ իւր ի համար թագաւորութեան, և զնորին ուստր, զոր անուանեաց Արտաշէս... և եղև այս յայնմ հետէ և առ յապայ օրէնք ի մէջ Արշակունեաց—միոյ որդւոյ բնակել ընդ արքայի՝ փոխանորդ լինել թագաւորութեանն, և այլոց ուստե-

Վարդան Արևելցի

Արդ, կարգաւորեալ զարքունիսն Վաղարշակայ, պահէ առ ինքն զԱրշակ զորդի իւր և զԱրտաշէս որդի նորա, և զայլ արքայազունսն առաքէ ի Հաշտեան գաւառն։ Եւ եղև այս ի կրօնս ամենայն թագաւորաց, զմի ոք ունել ընդ ինքեանս ժառանգ և զայլսն ի Հաշտէնս առաքել, զի կայցեն յագա-

բաց և դստերաց, գնալ ի կողմանս Հաշտենից՝ յազգին ժառանգութիւն։

Բայց Վաղարշակ յետ այսպիսեաց արուեստից և բարեկարգութեանց մեռանի ի Մծբին. թագաւորեալ ամս քսան և երկուս։

Արշակ որդի Վաղարշակայ թագաւորէ ի վերայ Հայոց ամս երեքտասան... պատերազմելով ընդ պոնտացիս, և նշանակ եթող յեզերս ծովուն մեծի. զնիզակն իւր, ասեն, զբոլորատէգ, որ էր արեամբ զեռնոց մխեալ, ձգեալ ի հետևակուց՝ խորագոյնս նստոյց յերկանաքար արձանին, զոր կանգնեաց ի ծովեզերն։ Զայս արձան բազում ժամանակս պատուեցին պոնտացիք որպէս զառ ի յաստուածոցն գործ։ (էջ 118—119)։

ուսութեան։ Թագաւորեալ Վաղարշակայ ամս քսան և երկու, մեռանի ի Մծբին. և թագաւորեաց Արշակ որդի նորա ամս քսան և երեք։ Սա կառոյց զնիզակն յարձաքարի յեզերս ծովուն Պոնտոսի, մխեալ արեամբ թիւնաւոր սողնոց, զոր պաշտեցին պոնտացիք իբրև զգործ աստուծոյ։ (էջ 31—32)։

Քիչ հետո շարունակելով իր Պատմությունը, Վարդան Արևելցին վերստին դիմում է Մովսես Խորենացու աշխատությանը և բառացի քաղում հետևյալը.

Մովսես Խորենացի

Քանզի էին Արշակայ թագաւորի որդիք երեք և դուստր մի...

Իսկ Աբգարու համոզեալ զնոսա խաղաղանալ, ի մէջ ամենեցուն հաստատէ զայս իրս սահմանելով. թագաւորել Արտաշիսի... զանձս ոչ առողջ մարմնով, այլ չարաչար ցաւովք ախտացեալ...

Իսկ Աբգարու եկեալ ի քաղաքն իւր յԵդեսիայ... Մարինոս որդի Ստորգեայ, առ որ առաքեաց Աբգար երկուս ի գլխաւորաց իւրոց, զՄար Իհար բդեաշխն Աղձնեաց և զՇամշագրամ նահապետ Ապահունեաց տոհմին և զԱնան հաւատարիմ իւր ի քաղաքն Բեթգուբրին, զգացուցանել նմա զպատճառս երթալոյն իւրոյ յարևելս... որոց

Վարդան Արևելցի

...մեռաւ Արշակն թագաւորն պարսից, թողեալ երեք որդի եւ դուստր մի, որք վիճէին ի վերայ թագաւորութեանն, զորս խաղաղացոյց հաշտութեամբ Աբգար՝ անդ գնալով. զաւագ որդին Արտաշէս՝ թագաւորեցուցանէ... և ի դառնալն պատահէ նմա ցաւ ուրկութեան։ Եւ եկեալ յԵդեսիա՝ առաքէ առ Մարինոս զօրավարն Հռոմայ զՄարիհաբ բդեշխն Աղձնեաց և զՇամշագրամ նահապետն Ապահունեաց, և զԱնանէ հաւատարիմ իւր, զի մի՛ խորհուրդ նենգութեան կարծեսցեն զերթն նորա յարևելս։ Եւ պատահեալ Մարինեայ յԵլեւթերապօլիս, լուան բանս բարիս և եկին յԵրուսաղէմ, և

եկեալ պտրին գնա յԵլևթերոյպօլիս…

Եւ նոցա դարձեալ անտի՝ եկին յԵրուսաղէմ տեսանել զՓրկիչն մեր Քրիստոս վասն լրոյ համբաւոյ սքանչելագործութեանցն, որում և ականատես եղեալ պատմեցին Աբգարու… (էջ 146, 147—148):

տեսին զՏէրն զի առնէր նշանս մեծամեծս, և հաւատացին ի նա, և բերին զտեսեալ նշանսն Աբգարու… (էջ 34):

Նկատել տանք այստեղ, որ Վարդան Արևելցին միշտ չէ, որ անվերապահ ու միատարր է ընդօրինակում իր աղբյուրները, այլ միաժամանակ համեմատում է համախոս մի քանի աղբյուրներ ու ըստ այդմ լրացնում անմիջական աղբյուրի հաղորդումները: Նման շատ փաստեր կարելի է վկայակոչել: Մասամբ այդպիսին են նաև մեր կողմից այստեղ ներկայացված հատվածները:

Վարդան Արևելցին իբրև աղբյուր օգտագործել է նաև Փավստոս Բուզանդի «Հայոց պատմություն»-ը, սակայն ավելի շատ Մովսես Խորենացու աշխատության միջոցով: Այստեղ մենք կանգ կառնենք միայն մի քանի փաստի վրա՝ ցույց տալու համար Փավստոս Բուզանդի երկի մասնավորապես անմիջական աղբյուր հանդիսանալը: Օրինակ. Վաչե Մամիկոնյան սպարապետի մահվան և նրա հիշատակը եկեղեցական կարգով նշելու վերաբերյալ Վրթանես կաթողիկոսի կարգադրության մասին տեղեկությունը Վարդան Արևելցին քաղել է ուղղակի Փավստոս Բուզանդի երկից ու զետեղել այն նյութերի մեջ, որոնք նա վերցրել է Մովսես Խորենացու աշխատությունից, նկատելով, որ վերջինիս մեջ այդ մասին նշում չկա[17]: Տիրան թագավորի դեմ պարսից կազմակերպած դավադրությունը թեև համառոտ, բայց ստուգապես պատմում է ըստ Փավստոս Բուզանդի[18]: Հիմնականում այդպիսին են նաև Հուսիկ կաթողիկոսի ու նրա Պապ և Աթանագինես որդիների վերաբերյալ պատմածները[19]: Այնուհետև ևս Վարդան Արևելցին նախապես ըստ Փավստոս Բուզանդի է շարունակում պատմել Ներսես Մեծի մասին, հատկապես, երբ թվարկում է նրա ծագումը, Կեսարիա գնալը, վանքերի, հիվանդանոցների, ուրկանոցների, հյուրանոցների հիմնարկումն ու այլ միջոցառումները, Բյուզանդիոն մեկնելն ու աքսորվելը[20]: Ինչ վերաբերում է Ներսես Մեծի և Արշակի ու Պապի հարաբերություններին և հակամարտությանը, տվյալ դեպքում Վարդան Արևելցին արդեն նախապատվությունը տալիս է Մովսես Խորենացու երկին[21], թեպետ մեջ ընդ մեջ կրկին դիմում է Փավստոս Բուզանդի աշխատությանը: Պապի կողմից Ներսես Մեծի թունավորվելը ակներևաբար բառացի պատմում է ըստ Մովսես Խորենացու[22]: Սակայն երբ անմիջապես նշում է, որ Ներսեսի փոխարեն Պապը կաթողիկոսական աթոռին բարձրացնում է «զՉունակ ոմն», որի վերաբերյալ Մովսես Խո-

---

17 Համմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 45: Փավստոս Բուզանդ. Հայոց պատմություն, Վաղարշապատ, 1933, էջ 37—38:

18 Համմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 46: Փավստոս Բուզանդ, նշվ. աշխ., էջ 62—63:

19 Համմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 46, Փավստոս Բուզանդ. նշվ. աշխ., էջ 23, 58—59:

20 Համմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ. էջ 46—47, Փավստոս Բուզանդ, նշվ. աշխ., էջ 78—85:

21 Համմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ. էջ 47, Մովսես Խորենացի, նշվ. աշխ., էջ 278—280, 291—292:

22 Համմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ. էջ 48, Մովսես Խորենացի, նշվ. աշխ. էջ 305—306:

ընթացքին առհասարակ ոչ մի հիշատակություն չունի (ոչ էլ Ասողիկը, որի երկից նա բառացի քաղել է 3 տող Շահակի կաթողիկոսանալու մասին[23]), նա որոշակի հիմնվում է Փավստոս Բուզանդի հաղորդումների վրա[24]։

Այսպիսով, ավելի քան որոշ է, որ Վարդան Արևելցին Փավստոս Բուզանդի «Հայոց պատմութիւն»-ը օգտագործել է նաև անմիջաբար։

Ղազար Փարպեցու «Պատմութիւն Հայոց»-ը Վարդան Արևելցու համար նույնպես հանդիսացել է անմիջական սկզբնաղբյուր։ Վարդան Արևելցին Վահան Մամիկոնյանի կյանքի և ապստամբական գործունեության մասին՝ մանկությունից մինչև Հայաստանի մարզպանության պաշտոնն ստանձնելը, պատմում է պարզապես խիստ համառոտելով Ղազար Փարպեցու մանրամասն տեղեկությունները[25]։ Մինչ այդ նա, խոսելով Վարդանանց, ավելի որոշակի՝ Միհրներսեհ հազարապետի, Վարազվաղանի, վերջինիս՝ Վասակ Սյունու փեսան լինելու հանգամանքի, փեսայի, աղջկա և աներ միջև ստեղծված հակառակության, Վարդանանց 1232 (?) զինվորների և հոգևորականության նահատակության մասին, դարձյալ օգտվում է Ղազար Փարպեցու երկից, և ոչ՝ Եղիշեի[26]։ Նա, ամենայն հավանականությամբ, ձեռքի տակ չի ունեցել Եղիշեի «Յաղագս Վարդանայ և հայոց պատերազմին» աշխատությունը, թեկուզև Վարդանանց նահատակության՝ իր կողմից նշված վայրն ու ամսաթիվը համապատասխան են Եղիշեի հաղորդմանն այդ մասին[27]։ Ըստ երևույթին, նա մեզ անհայտ մի այլ գրավոր աղբյուրի, կամ էլ՝ բանավոր պատումների հիման վրա է այդ նշել։ Այլ կերպ, մի՞թե նա ուրիշ ոչինչ չէր քաղի Եղիշեի աշխատությունից։ Մեզ սույն հետևության է բերում նաև հետևյալը։ Ինչպես տեսանք, նա և միայն նա Վարդանանց նահատակների թիվը հայտնում է 1232-ի 1036-ի փոխարեն, ինչպես հաղորդում են և՛ Եղիշեն, և՛ Ղազար Փարպեցին[28]։ Ո՛չ «Յայսմաւուրք»-ի մեջ և ո՛չ էլ այլուր չհանդիպեցինք նման հաշվարկի։ Չենք կարծում, որ տվյալ դեպքում տեղի է ունեցել գրչագրական սխալ, որովհետև ՌԼԶ և ՌՄԼԲ տառերի խմբերը, որոնցով արտահայտված են եղել 1036 և 1232 թվերը, հազիվ թե կարող էին երբևէ շփոթել մեկը մյուսի հետ։

Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» աշխատության անմիջական աղբյուրներից է Սեբեոսի «Պատմութիւն»-ը[29]։ Վերջինիս Պետերբուրգի հրատարակությանը (1879 թ.) կից հավելվածաբար տրված են Վարդան Արևելցու աշխատությունից երկու հատվածներ, հաշվի առնելով դրանց ուղղակի առնչությունը հրատարակվող երկին[30]։ Կան և այլ հատվածներ, որոնք նույնն են հաստատում։ Բերենք դրանցից մի երկուսը՝ ավելի հստակ եզրակացության գոյացնելու համար։

---

23 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 48, Ասողիկ. նշվ. աշխ., էջ 73։

24 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 48, Փավստոս Բուզանդ. նշվ. աշխ., էջ 132։

25 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 56—57, Ղազար Փարպեցի. նշվ. աշխ., հատկապես էջ 234, 239, 342—343, 259, 346—347, 290—291, 293—296, 298, 308—310։

26 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 54, Ղազար Փարպեցի. նշվ. աշխ., էջ 79, 161։

27 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 54, Եղիշէ. Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 182։

28 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 54, Եղիշէ. նշվ. աշխ., էջ 120, Ղազար Փարպեցի, նշվ. աշխ., էջ 155։

29 Սեբեոսի եպիսկոպոսի պատմութիւն, Երևան, 1939։

30 Սեբէոս, Պատմութիւն, Պետերբուրգ, 1879, էջ 49—57։

### Սեբեոս

...եւ ի ժամ վախճանին... հաւատաց ի Քրիստոս... և կոչեալ զեպիսկոպոսապետն, որ Երան կաթուղիկոս անուանի, մկրտեցաւ ի նմանէ... և հաղորդեցաւ... Եւ ապա զկնի սակաւ ինչ աւուրց ննջեաց ի բարւոք ծերութեան իւրում, և բարձեալ զմարմին նորա քրիստոնէիցն՝ տարեալ եդին ի շիրիմս թագաւորացն։ Եւ թագաւորէ Որմիզդ որդի նորա յետ նորա։ (էջ 29)։

### Վարդան Արևելցի

Իսկ Խոսրով թագաւոր Պարսից մօտ ի վախճանն հաւատաց ի Քրիստոս, և կոչեցեալ առ ինքն զԵրան կաթողիկոսն՝ զոր տէր Գիւտ էր ձեռնադրեալ հանդերձ այլոք եպիսկոպոսօք, ի գնալն իւրում առ Պերոզ արքայ... ցանկանալով մահու, մկրտեցաւ յԵրանայ և հաղորդեցաւ և զկնի տոկոսաց կատարեցաւ, և թաղեցին զնա քրիստոնեայքս յարքունական գերեզմանս։ Եւ առ զթագ նորա որդի նորա Որմիզդ... (էջ 58—59)։

Սույնի անմիջական շարունակությունը, որտեղ պատմվում է, թե ինչպես Որմզդին սպանեցին իր դահլիճում, նրա որդին՝ Խոսրովը հաջորդեց նրան և հալածվեց Վահրամից, դարձյալ բառացի քաղված է Սեբեոսի երկից[31]։ Հետևյալը նույն կարգի քաղվածք է.

### Սեբեոս

Եւ եղև ի ժամանակին յայնմիկ հաճոյանալ Սմբատայ Բագրատունւոյ յաչս Խոսրովու արքային. տալ ի նա զմարզպանութիւն երկրին Վրկանայ... Կային յաշխարհին յայնմիկ ազգն գերեալք ի Հայաստան երկրէ... զլեզու իւրեանց մոռացան և զգրութիւն նուազեալք ...և հաստատէին ի կարգ քահանայութեան յաշխարհի անդ երէց ոմն ի նոցանէ, որ անուանեալ կոչէր Աբէլ... և հրամայէ երթալ տեսանել զերկիր իւր ... եւ նստուցին զԱբրահամ զՌշտունեաց եպիսկոպոսն յաթոռ հայրապետութեան։ Ապա սկսան արկանել հիմն եկեղեցւոյն. ժողովեաց ճարտարապետս քարի... Եւ գրեալ գիր ամբաստանութեան բերդակալին և մարզպանին առ արքայ, եթէ «կա-

### Վարդան Արևելցի

Յորում աւուր Սմբատ Բագրատունի քաջապէս խոնարհեցուցանէ ընդ ոտիւք Խոսրովու զամենայն թշնամիս նորա և նորա պատուասիրեալ նմա տալ զմարզպանութիւնն Վրկան աշխարհի, ուր երթեալ գտանէ ազգս Հայոց գերեալ և բնակեալ ի Թուրքաստան անապատին մեծի՝ որ Սագաստանն կոչի, մոռացեալ զլեզու և զգրութիւն որք տեսեալ զՍմբատ խրախ լինէին և նորոգէին զլեզու և զգիր, և գերէց մի նոցա Հաբէլ անուն՝ տալ եպիսկոպոս ձեռնադրել մեծի հայրապետին Մովսիսի, հաստատէ զնոսա վիճակ սրբոյն Գրիգորի, և առեալ հրաման յարքայէ՝ գալ տեսանել զերկիր իւր։ Եւ եկեալ ի Դուին՝ սկսաւ շինել զփայտաշէն Սուրբ Գրիգորն ի Վարդանայ սըր-

---

31 Հմմտ. Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 59, Սեբեոս, Պատմություն, Երևան, 1939, էջ 35—36։

րի մերձ է առ բերդն, և վնասակար է ի թշնամւոյ»։ Հրաման հանեալ յարքայէ, եթէ «բերդն քակեսցի և եկեղեցին անդրէն ի նմին տեղւոջն շինեսցի»։ (էջ 61, 65)։

բոյ. և պահնակ բերդին բողոքէ ի Դուռն թէ վնասակար է բերդիս. և ելանէ հրաման քակել զբերդն և հնոյագոյն շինել և խնդացեալ Սմբատ ի փառս Քրիստոսի շինէ զեկեղեցին կոփածոյ վիմօք, և տայ ձեռնադրել պատրիարգ զտէր Աբրահամ զեպիսկոպոսն Բջնունեաց... (էջ 59—60)։

Այսքանը այս կապակցությամբ, կարծում ենք, լիովին բավարար է։

Վարդան Արևելցին տեղեկություն է քաղել նաև Մ. Կաղանկատվացու աշխատությունից, թեկուզ ընդամենը մի քանի տող[32]։

Ղևոնդի «Պատմութիւն»-ը, թեև համեմատաբար քիչ, ուղղակիորեն առնչվում է Վարդան Արևելցու աշխատությանը։ Միաժամանակ միջնորդաբար, հետագա այլ հեղինակների երկերի միջոցով ևս, այն փաստագրական նյութ հայթայթել է Վարդան Արևելցու համար։ Բայց մենք այստեղ կփորձենք ցույց տալ երկու երկերի միայն անմիջական կապը, ինչպես որ մտադրվել ենք վարվել մեր սույն հոդվածում նաև մյուս բոլոր աղբյուրների կապակցությամբ։ Դարձյալ դիմենք բնագրական համեմատական, զուգահեռների հավաստի եղանակին, թեկուզև մեկ օրինակով.

Ղևոնդ

... զի զի (20) ամ կալեալ զիշխանութիւնն Մահմետ՝ մեռանի։ Յետ է այնորիկ փոխանորդէ զիշխանութիւնն Մահմետի Աբու Բաքր և Ամր և Օթման։

... Հասանէին ի վերայ արքային Պարսից, որում անուն էր Յազկերտ... հարեալ սատակէին։ Եւ յայնմհետէ բարձեալ կործանէր թագաւորութիւնն Պարսից, որոց եղև թիւ իշխանութեան նոցա ամք ՆԶԱ (481)։ (էջ 3, 6—7, 12—13, 14)։

Վարդան Արևելցի

Բայց Մահմէտ քսան ամ կալեալ զիշխանութիւնն... (բազմակետերը ըստ տպագրի են—Փ. Ա.) և զկնի նորա առին զիշխանութիւնն Օմար և Ամր և Բուբաքր... և սպանին զՅազկերտ թոռն Խոսրովու, և բարձին զթագաւորութիւնն պարսից, որ տևեաց ամս չորեքհարիւր ութսուն և մի։ (էջ 68)։

Վարդան Արևելցին այնուհետև էլ օգտվել է իր սույն աղբյուրից, խիստ համառոտելով նրա հաղորդումները հատկապես Աշոտ Պատրիկի՝ արաբների դեմ կազմակերպած ապստամբության, իշխանների հետ անմիաբանության, Գրիգոր և Դավիթ Մամիկոնյանների կողմից կուրացվելու, Հեշմի որդիներ Արգլյանների իշխանության գլուխ անցնելու, Մուշեղ Մամիկոնյանի, Սմբատ

32 Մովսէս Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհին, Թիֆլիս, 1912, էջ 267—269։

Բագրատունու պատմության և այլ դեպքերի վերաբերյալ[33], երբեմն միայն միջանկյալ դիմել է այլ աղբյուրների, մասնավորապես Ասողիկի աշխատությանը[34]:

Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմությունը»[35] Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» առավել կարևոր սկզբնաղբյուրներից է, որին նա դիմել է հաճախ և ընդարձակ բառացի քաղվածքներ վերցրել նրանից: Վարդան Արևելցին նաև մանր տեղեկությունների համար էլ ուղղակի օգտվել է նրանից՝ մյուս աղբյուրներից իր քաղած նյութերը կապակցելու, լրացնելու կամ հիմնավորելու համար, ինչպես վարվել է նաև մի քանի այլ հիմնական աղբյուրներից օգտվելիս: Սակայն այս մասին ևս՝ այլ առիթով: Այժմ փորձենք բնագրական մի քանի զուգահեռներով ցույց տալ, որ իրոք Հովհաննես Դրասխանակերտցու հիշյալ աշխատությունը Վարդան Արևելցու անմիջական և հիմնական աղբյուրներից է, որին նա միաժամանակ մեծ վստահություն է ընծայել:

Հովհաննես Դրասխանակերտցի

Եւ զկնի սորա (Քրիստափորի — Փ. Ա.) զՂեւոնդ, որ էր ի փոքր եռատատայ կացուցանեն յաթոռ սրբութեան: Իսկ Ղեւոնդի կալեալ զաթոռ հայրապետութեան զամս երիս՝ վախճանի: Եւ զկնի սորա զՆերսէս ի գաւառէն Բագրեւանդայ ի գեղջէ Աշտարակայ...: Ի ժամանակի սորա Խոսրով արքայ պարսից զօր բազում գումարեալ առաքէ հրամանս Վարդանայ, և լինի պատերազմ սաստիկ ի դաշտին Խաղամախեաց. և ի մշտաջան աղօթից սրբոյն Ներսեսի անհնարին հարուածովք մաշեն զօրքն Վարդանայ զպարսիկսն: Յաւուրս սորա Մախոժ... ի մկրտութեան Յիզտբուզիտ անուանեալ, որ թարգմանի «աստուած ապրեցոյց», բազում չարչարանս կրեալ ի մարզպանէ Վշնասն Վահրամայ՝ ի Դվին քաղաքի պսակի մարտիրոսական մահուամբ ի Քրիստոսէ: Զոր բարձեալ զաւուրբ մար-

Վարդան Արևելցի

Այլ զտէր Քրիստափոր յաջորդէ տէր Ղեւոնդ ամս երկու, և ապա տէր Ներսէս ամս ինն: Ի ժամանակս նորա առաքեաց Խոսրով թագաւորն Պարսից հրամանս, զի կալցեն զՎարդ. և եղև մեծ պատերազմ ի դաշտին Խաղամախեաց և կոտորեն զզօրսն պարսից աղօթիւք սուրբ հայրապետին Ներսիսի: Եւ յայն ժամանակս կատարեցաւ սուրբ Յիզտբուզիտ, որ է աստուած ապրեցոյց. կատարեցաւ ի Դուին՝ ի մարզպանէն Վարհամայ, զի զկնի Վարդայ՝ պարսիկք իշխէին մարզպանք, և զմարմին սրբոյ վկային ամփոփեալ սուրբ Հայրապետին Ներսիսի առընթեր կաթուղիկոսարանին, շինեալ վկայարան կոփածոյ ի վերայ նորա:

Ի սոյն աւուրս Եզրաս Անգեղացի զդասս ճարտասանաց բազմացոյց: Զկնի Ներսիսի՝ տէր Յոհանէս ամս հնգետասան. և յետ

33 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 74—75, Ղևոնդ. Պատմություն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 112—114, 121—124, 136, 140—143, 145—157:

34 Հմմտ. Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 74—75, Ասողիկ. նշվ. աշխ., էջ 130—131: Տողատակ ծանոթագրով բերված պարբերությունը ևս բառացի առնված է Ասողիկի երկից, սակայն պիտի դրվի բնագրի մեջ, ինչպես հին ձեռագիր օրինակում էլ եղել է:

35 Հ. Դրասխանակերտցի. Պատմություն Հայոց, Թիֆլիս, 1912:

*մինն սրբոյ մարտիրոսին՝ մեծի հայրապետին Ներսիսի ... եդին մերձ ի սուրբ եկեղեցին կաթողիկոսարանի յարևելից կողմանէ, շինեալ ի վերայ վկայարան սուրբ կոփածոյ քարամբք։ Սորա կալեալ զհայրապետական աթոռն զամս ինն՝ վախճանի։ Եւ զկնի սորա զումն Յոհաննէս ի Գաբեղենից... որ կացեալ յաթոռ հայրապետութեան ամս ժէ՝ վախճանի։ Յետ սորա ապա զՄովսէս զայրն Աստուծոյ, որ յԵղիվարդ գեղջէ...։*

*Յամի տասներորդի հայրապետութեան սորա և երեսներորդի առաջներորդի ամին խոսրովայ՝ որդւոյ Կաւատայ արքային պարսից՝ լցեալ բոլանդակեալ շրջանակ բոլորակի հինգհարիւր երեսուն երկու ամաց... (էջ 63—65)։*

*նորա տէր Մովսէս յԵղիվարդայ ամս երեսուն։ Սա ի տասներորդ ամի հայրապետութեանն իւրոյ, և յերեսներորդ առաջներորդ ամին Խոսրովու, որդւոյ Կաւատայ, և ի չորեքտասաներորդն Յուստիանոսի, որ զսուրբն Սոֆի շինեաց, եդիր թուական հայոց և տոմար. յորում ժամանակի լցեալ էր շըրջանն հինգհարիւր երեսուն և երկուց...։ (էջ 57)։*

Մեր եզրակացությունը ավելի ամրապնդելու համար բերենք մի օրինակ ևս։ Մինչ այդ ասենք, որ ներկայացվող հատվածների միջև ընկած էջերում նրա աշխատությունից առնված շատ այլ քաղվածքներ էլ կան, որոնք միանգամայն վկայում են, որ Վարդան Արևելցին այն ձեռքի տակ պահել է տևականորեն և օգտագործել ամեն մի անհրաժեշտ առիթով։

Հովհաննես Դրասխանակերտցի

*Իսկ Անաստասայ հայրապետին հոգացեալ վասն Հայկականս տոմարի... առ ինքն զԱնանիայ Անեցի կոչեալ, որ բանիբուն այն արուեստի էր հմուտ, հրամայէ նմա ստեղծագործել զխնդրելին իւր։ ... Եւ մինչդեռ խորհէր մեծն Անաստաս ժողովօք... հաստատել՝ վախճան կենաց նմա ժամանէր... կացեալ յաթոռ հայրապետութեան ամս վեց։ Յետ այսորիկ Իսրայէլ յՈդմսոյ յաջորդէ զաթոռ հայրապետութեան։ Յաւուրս սորա զԲատարայ ոմն զօրագլուխ զօրուն տաճկաց որ ի Հայք՝ վանեալ վարէ կատար-*

Վարդան Արևելցի

*Յայնմ ժամանակի էր Անանիա Շիրակունի, որ առեալ հրաման յԱնաստասայ՝ յօրինէ տոմար հանապազորդ. որ մինչ խորհէր պատրիարգն ժողովով հաստատել՝ կատարի, և յաջորդէ զնա Իսրայէլ՝ զկնի վեց ամ պաշտելոյն Անաստասայ։ Յաւուրս սորա զԲատարա ոմն զօրագլուխ տաճկաց՝ որ ի Հայս, վանեալ հալածէ Ներսեհ իշխանն Վրաց։ Իսրայէլ կեցեալ յաթոռն ամս տասն՝ վախճանի, և առնու զքօղն սուրբն Սահակ, որ ի Ձորափոր յԱրքունեացն։ Ի յեօթն ամին սորա՝ արշաւեցին խաղիրք ի Հայս, և սպա-*

մամբ սատրի Ներսեհ իշխան Վրաց՝ փախստեայ գնա արտաքս։ Իսկ Իսրայէլ կացեալ յաթոռ հայրապետութեան ամս տասն՝ վախճանի։ Եւ զկնի նորա Սահակ կալ յաթոռ հայրապետութեանն, որ հայրենօք էր ի Ձորափորոյ յարքունաշէն գեղջէ...։ Իսկ ապա յեօթներորդ ամի աթոռակալութեան սորա պատերազմ սատրիկ յայնմ մարզէ խաղաց ի վերայ սատակեցեալ լինէր մեծ իշխանին Գրիգոր, որ և սպանաւ իսկ՝ և եղաւ ընդ հարս իւր։ Զկնի սորա պայազատէ զիշխանութիւնս Հայոց Սմբատ Բագրատունի՝ որդի Սմբատայ։ (էջ 90—93)։

նին զԳրիգոր իշխանն. և զերեցին զՀնարաւորն իւրեանց։ Եւ առնու զիշխանութիւնս Աշոտ Բագրատունի՝ որդի Սմբատայ։ (էջ 70)։

Այս կապակցությամբ այսքանը, կարծում ենք, լիովին բավարար է։ Ուխտանեսի «Պատմության» Վարդան Արևելցու համար անմիջական աղբյուր հանդիսանալու մասին անուղղակի վկայում է ինքը՝ Վարդան Արևելցին[36]։ Այդ որոշակի հաստատվում է նաև բնագրական համեմատական քննությամբ, ինչպես, օրինակ.

Ուխտանես

Իսկ զԿիւռոնէ...։ Սա էր աշխարհաւ և ազգաւ ի Վրաց՝ ի գաւառէ Ջաւախաց՝ ի գեղջէ որ կոչի Սըկուրրի. և ունէր զդպրութիւն վասն վրաց և Հայոց։ Եւ երթեալ յերկիրն Հոռմոց բնակեցաւ անդ ամս հնգետասան՝ ի գաւառին՝ որ կոչի Կողոնիայ. և բնակի անդ մեծ քաղաքացեղն Նիկոպոլիս կոչեցեալ՝ յեայր գետոյն, որ կոչի Գայլ։ Եւ վարժեալ և ուսեալ զդպրութիւն նոցա... գնաց ի Հայս առ Մովսէս կաթողիկոսն Հայոց, և բնակէ առ նա ի սուրբ կաթողիկէին որ ի Դուին... Եւ նա կացուցանէ զնա վանաց երէց սրբոյ կաթողիկէին, այլև քորեպիսկոպոս՝ տալով նմա զվիճակ զգա-

Վարդան Արևելցի

... որ և զԿիւրիոն, որ էր ազգաւ ի Վրաց, ի գաւառէն Ջաւախայ ի գեղջէ Սկուտրի, և գիտէր զդպրութիւն Հայ և վրացի, ձեռնադրեաց վրաց կաթողիկոս, որ եղև յետոյ քաղկեդոնիկ։ Քանզի ի տղայութեանն գնացեալ էր ի Յոյնս, ի Կողոնիա գաւառ, և բնակեալ ի գեօղն Նիկոպօլիս յեզր Գայլ գետոյ, որ և վարժեցաւ յոյն դպրութեամբ. և յետ հնգետասան ամին, եկն առ Մովսէս ի Դուին, և կացոյց զնա վանաց երէց սրբոյ կաթողիկէին, այլ և քորեպիսկոպոս Այրարատեան գաւառին ամս եօթն. և յորժամ մեռաւ կաթողիկոսն վրաց, առաքեցին իշխանք աշխարհին առ տէր Մովսէս, բառ

36 Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 42։

ւառն Այրարատեան։ Եւ կացեալ ի նմին ամս հինգ. ապա ընդ այն ժամանակս մեռանի կաթողիկոսն Վրաց։ Եւ ազատքն իշխանք աշխարհին և նախարարքն համօրէն եպիսկոպոսօքն առ Մովսէս կաթողիկոսն Հայոց՝ խնդրել իւրեանց առաջնորդ։ Իսկ նա խորհուրդ արարեալ՝ զի ի տանէ իւրմէ տացէ նոցա Առաջնորդ... ձեռնադրէ զԿիւրոն... Իսկ յորժամ եհաս Կիւրոն ի վիճակ իւրոյ... և նուաճէ նորօր հանդերձ առհասարակ զամենայն աշխարհն ընդ իւրով իշխանութեամբ։ ...ձեռնադրէ եպիսկոպոս մի խուժիկ Նեստորական, որում անուն Կիս կոչիւր, որ է խատուբին։ Քանզի և էր իսկ խիստ...։ Սա եկեալ առ նա յաշխարհէն Հոռոմոց՝ ի գաւառէն Կողոնեայ՝ բնակութեամբ ի գեղջէն՝ որ կոչի Զուտարիմայ, մերձ ի Նիկոպոլիս... գաւառակից միմեանց լեալ կամ գեղակից, այլ աղանդակիցք և ուսումնակիցք...։ (Հատված Բ, էջ 3—5)։

առաջին կարգին, զի տացէ նոցա առաջնորդ, և զնա կամեցաւ տալ որպէս ի տանէ իւրմէ. և երթեալ նուաճեաց զամենայն երկիրն. և ապա եկն առ նա խուժիկ մի Նեստորական, որ Կիս կոչիւր, այսինքն խատութիւն, որպէս եղեն, որ էր ի Կողոնիոյ, ի գեղջէն Զուտարիմայ, մօտ Նիկոպօլսի. որ լեալ էին միմեանց ուսումնակիցք և աղանդակիցք։ (էջ 58)։

Որպեսզի որևէ երկընտրանքի առիթ չմնա, ստորև կբերենք Քառասուն մանկանց նահատակության վերաբերյալ հետևյալ համեմատելի բնագրական զուգահեռը.

## Ուխտանես

Մնացումն եղև մեզ՝ յիշատակել զնահատակութիւնն սրբոց քառասնիցն՝ որ եղև յամբարիշտն Լեկիանէ. զոր եհարց երանելի սուրբ Թագաւորն Կոստանդիանոս՝ զՄաքսիմիանոս և զՄաքսինդես, և զՄաքսիմոս, և զամբարիշտն Լեկիանէս... և հանեալ զհարիւրապետ ումն հանդերձ գնդաւն իւրով ի գաւառն որ կոչի Կապուտակէք, և ի թեմն Թելախոնէք, և Անատոլիկէք, և Խարտանայք, և Արմենակք, և Դալիմոն, զի զօրս գտցեն ի քրիստոնէից զոք՝ մա-

## Վարդան Արևելցի

Իսկ սուրբն Կոստանդիանոս եբարձ զՄաքսիմիանոս ամպարիշտն և զՄաքսինտէս, և զՄաքսիմոս, և զԼիկիանոս անօրէն, որ եհան հարիւրապետ ումն իւրով գնդաւն ի գաւառն Կապուտակէք, և ի թեմն Թելախոնէք և Անատոլիկեայք, և Խարսանէք և Արամենակք եւ Դալիմոն, չարչարել զորս գտցէ քրիստոնեայս։ Յորմէ խրատուցեալք փախեան ի կողմանս Սեբաստիոյ, ոմանք ի Մելետիան, որ է ամրոց ի լեռնակողմն, և այլք ի Տախալասն լե-

տուսցեն ի պաշտօն կռոցն, և կամ սպանցեն չարչարանօք։ ...և եկեալ հասին ի սահմանս Սեբաստիոյ. դիմեն ըստ խրաքանչիւր յաջողութեան՝ ոմանք ի Մելեսիան, որ է ամրոց և լեռնակողմն. իսկ այլք ի Տախալաստն ... սուրբ ի վերայ եղեալ կոտորեցին զբազումս... Իսկ ի տեղի սպանելոցն... կոչի Եկեղեցաձոր, և սակս այնորիկ տեղիք նահատակութեան նոցա պատուին և փառաւորին ի բնակչաց աշխարհին։ Իսկ սուրբ քառասունքն... երթեալ բնակէին յայրի մի յեղր գետոյն՝ որ կոչի Ալիս՝ ի տեղի մի ամրոցին... որ կոչի Քաչ-Վահանայ. որ դեռևս տակաւին կայ տեղիք կայարանաց սրբոցն և գիր խրաքանչիւր անուանցն գրեալ ի տախտակս քարանցն...։ Իսկ ապա յետոյ երթեալ պատմէին Լիկիանէ(ի) վասն սրբոցն...։ Եւ նորա հրաման տուեալ... գտին զնոսա ի տեղւոջն... տասն և հինգ Արեգ ամսոյ... և վասն այնորիկ կարգեցաք մեք զօրն զայն տօն սրբոց Քառասնիցն...։ Իսկ կատարումն նահատակութեան նոցա եղև ի մարտի ինն... (Հատված Ա., էջ 85—87)։

տանն, որք բռնութեամբ արտաքս ածեալ կոտորեցան յԵկեղեցաձորն կոչեցեալ, որ և պատուի մինչև ցայսօր։ Իսկ սուրբ քառասունքն երթեալ Թաքեան յայրին՝ որ կայ ի վերայ Ալիս գետոյ, որ այժմ կոչի Քաջ Վահանայ. ուր կառուցին խաչ, և գրեցին զխրաքանչիւր անուանս ի քարին. զոր գիտացեալ պատմեցին Լիկիանեայ և հրամանաւ նորա եկեալ հանին յայրէ անտի, ի հնգետասան արեգ ամսոյ. զոր Ոսխթանէս տօն կարգեաց՝ որ է սկիզբն հանգստի նոցա և կատարումն ի մարտի ինն։ (էջ 41—42)։

Ստեփանոս Տարոնացու (Ասողիկ) «Տիեզերական պատմութիւն»-ը[37] ևս Վարդան Արևելցու կողմից լայնորեն օգտագործված սկզբնաղբյուրներից է։ Տվյալ իրողությունը ըստ երևույթին բացատրելի է նաև նրանով, որ այն նույնպես «տիեզերական պատմություն» է, ինչպես և Վարդան Արևելցու աշխատությունը, ընդգրկում է լայնածավալ ժամանակաշրջան և պարունակում առատ փաստագրական նյութ։ Միաժամանակ նկատելի է, որ Վարդան Արևելցու համար այն առավել վստահելի աղբյուրներից է։ Այս երկից Վարդան Արևելցու արած քաղվածները համեմատաբար ավելի հարազատ են իրենց մայր աղբյուրին և ավելի նվազ են ենթարկված լրացումների ու այլ միջամտությունների։ Եղած տարբերությունները հիմնականում Վարդան Արևելցու կողմից կատարված համառոտագրության, երբեմն էլ քաղվածքը բուն սկզբնաղբյուրի կամ

---

37 Ստեփանոս Տարոնացի, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885։

համախոս այլ աղբյուրի հետ համեմատելու և բստ այդմ փոքր լրացումներ կատարելու արդյունք են։ Խոսենք բնագրական օրինակներով.

Ասողիկ

Սա (Արշակ—Փ. Ա.) սպանանէ զԳնէլ եղբօրորդի իւր վասն նախանձու Փառանձեմայ կնոջ նորա ի քսութենէ Տիրիթայ... Նզովեալ որդոյն Ներսիսի զԱրշակ... չոգաւ յաշխարհն Յունաց, փոխանակ իւր թողեալ զԽադ եպիսկոպոս Բագրեւանդայ... որոյ շտեմարանք աղբերացան ըստ նմանութեան մեծին Եղիայի։

Ընդ այն ժամանակս եկեալ Շապհոյ Պարսից արքայի յԱրտաշատական՝ առ ինքն կոչէ զԱրշակ։ Եւ կալեալ կապեաց* զնա և ետ տանել ի Խորասան։ (էջ։ 70)։

Վարդան Արևելցի

Իսկ Արշակայ սպանեալ զԳնէլ եղբօրորդի իւր վասն Փառանձեմայ կնոջ նորա ի քսութենէ Տիրիթայ, նզովէ զնա սուրբն Ներսէս, և ինքն գնայ ի Յոյնս, փոխանորդ իւր թողեալ զԽադ եպիսկոպոս Բագրեւանդայ, որոյ շտեմարանքն աղբերացան որպէս Եղիայի՝ կնոջն այրւոյ։

Ընդ այն ժամանակս Շապուհ արքայն Պարսից գայ յԱրտաշատական և առ ինքն կոչէ զԱրշակ, կապէ զնա և տայ տանել յԱնուշն կոչեցեալ դղեակ։ (էջ 48)։

Այսպիսին է նաև հետևյալ օրինակը.

Ասողիկ

Իսկ յետ մահուանն Սանատրկոյ թագաւորէ Հայոց Երուանդ... և սատակէ զամենայն որդիսն Սանատրկոյ, բայց միայն մնաց Արտաշէս մանուկ, զոր առեալ սանուցի նորա և Սմբատ դայեկի նորա՝ անցանեն առ Դարեհ արքայ Պարսից սնուցանել զմանուկն։ Յայսմ կասկածէ երկուցեալ Երուանդ ...ի թագաւորութեանն Վեսպասիանոսի և Տիտոսի, թողլով ի նոսա զՄիջագետս ...

Յաւուրս սորա փոխին արքունիքն յԱրմաւրայ... ի քարակտուր մի բլուր... որ այժմ ասի Երուանդաքար։ ...Հեռագոյն ըստ հիւսիսոյ քաղաք փոքր շինեալ ի վերայ

Վարդան Արևելցի

...Եւ առնու զԹագն Երուանդ ...և կոտորէ զամենայն զաւակս Սանատրկոյ, զերծեալ մանուկ մի Արտաշէս անուն, զոր առեալ Սմբատայ՝ անկանի ի Պարս, առ Դարեհ արքայ վերջին։ Եւ Երուանդ թողու զՄիջագետս ի Տիտոս և առնէ զնա յայժ. և շինեալ զԵրուանդաշատ, անդ փոխէ զարքունիս յԱրմաւրոյ, և ի նմանէ հեռագոյն շինէ զԲագարան տուն կռոց ի վերայ Ախուրեանայ գետոյ, և քուրմն դնէ զԵրուազ եղբայր իւր։ (էջ35)։

* Տողատակում նաև տարընթերցված՝ կապէ, ինչպես Վ. Արևելցու հատվածում է։

*Ախուրեան գետոյն և անուանեաց Բագարան, և անդ զբագինսն եդեալ՝ զեղբայր իւր զՏրուագ քրմապետ կացուցանէ։ (էջ 47—48)։*

Հաջորդ զուգահեռ համեմատությունը կարող է լիովին ամրապնդել վերոնշյալ եզրակացությունը.

### Ասողիկ

*Եւ Աբդլմէլիք վախճանեալ՝ տիրէ տաճկաց Վլիթ որդի նորա ամս Ժ։ Սա յառաջնում ամի իշխանութեան իւրոյ խորհեցաւ բառնալ յաշխարհէս զազատագունդն Հայոց, և հրամայէ Մահմետի զօրավարին զայս առնել։ Եւ նա հրամայէ Կասմայ ումեմն, որ էր հրամանատար ի կողմանս Նախճաւան քաղաքին՝ կոչել առ ինքն զնախարարսն Հայոց...։ Եւ հրամայեցին յերկուս բաժանել զնոսա, զոմանս յեկեղեցին Նախճաւանայ, և զկէսն յեկեղեցին Խրամայ. և հրով վառեալ զեկեղեցիսն՝ այնպէս այրեցին զամենեսեան ի ՃԾԳ (113 551=664) թուականին և զգլխաւոր նախարարսն զփայտէ կախեալ զատապարտէին...*

*Եւ զկանայս և զորդիս նոցա ի գերութիւն վարեալ, որ և զՎարդան որդի Խոսրովու Գողթան տեառն.. զվճիռ մարտիրոսութեան ընկալաւ։ (էջ 124—125)։*

### Վարդան Արևելցի

*Մեռաւ Աբդլ մէլիք, և առ ըզտեղին Վլիթ որդի նորա, որ հրամայէ Մահմետի բառնալ զազատսն Հայոց ի Կասմայ ումեմընէ, որ էր հրամանատար Նախճաւանի, որ խաբէութեամբ հաւաքեալ զնոսա, զոմանս յեկեղեցին Խրամայ, և զկէսն յեկեղեցին Նախճաւանի, այրէ զնոսա ի ՃԾԳ (113 551=664) թուականին. և զգլխաւոր նախարարսն ըզփայտէ կախեալ չարչարէին և զկանայս և զորդիս նոցա՝ ի գերութիւն վարեցին, ընդ որս և զՎահան՝ որդի Գողթան տեառն, որ և մարտիրոսացաւ։ (էջ 72)։*

Բնական է, որ Ասողիկը նույնպես իր նյութերը հավաքել է իրեն նախորդած պատմիչների երկերից, երբեմն նաև բառացի, ու զետեղել իր աշխատության մեջ։ Այստեղից էլ վերոբերյալ հատվածների որոշ ընդհանրությունները Մովսես Խորենացու և Ղևոնդի երկերի համապատասխան հատվածների հետ[38], որոնք առաջին հայացքից նույնիսկ կարող էին առիթ տալ ենթադրելու, թե Վարդան Արևելցին նրանցից է օգտվել անմիջապես։ Սակայն այդպես չէ, որովհետև Ասողիկի և Վարդան Արևելցու բերված ու չբերված հատվածների բառացի նմանությունները ավելի շատ են ու ակնհայտ։ Բացի այդ, նշված գրքերի անմիջական հաջորդականությունը, որն, ասենք, առկա է Ղևոնդի երկում,

[38] Հմմտ Մովսէս Խորենացի, նշվ. աշխ., էջ 162—166, 283—285, 295, 299—300։ Ղևոնդ, նշվ. աշխ., էջ 31—36, Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 72։

Ասողիկի կողմից խմբագրաբար փոփոխված է և ստեղծված նույն դեպքերի հաջորդական նոր շղթա, որը և տվյալ դեպքում նկատվում է Վարդան Արևելցու աշխատության մեջ։ Վերջապես Վարդան Արևելցին անձամբ հաստատում է, որ ինքը ուղղակի օգտվել է Ասողիկից։ Այս առնչությամբ նա գրում է. «Ասողիկն ասէ, թէ ստուգեցաք՝ զվեշտասաներորդ Յազկերտի՝ երրորդում Մարկիանոսի»[39]։ Նրապես էլ Ասողիկի երկում կա նման բառացի հիշատակություն[40]։ Ուստի, ավելի քան պարզ է, որ Ասողիկի «Տիեզերական պատմութիւն»-ը Վարդան Արևելցու անմիջական և կարևոր աղբյուրներից մեկն է։

Վարդան Արևելցուն ամենից առավել փաստական նյութ հայթայթող սկզբնաղբյուրը, թերևս, Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրութիւն»-ն է[41]։ Առատ և բազմաբնույթ են հատկապես 1080—1140-ական թվականների ընթացքում տեղի ունեցած ռազմաքաղաքական իրադարձությունների, հայ-բյուզանդական հարաբերությունների, խաչակրաց արշավանքների, խաչակիրների՝ Կիլիկյան հայկական պետության տարածքի վրա ծավալած գործունեության, ազգային-եկեղեցական խնդիրների և պատմական անձնավորությունների վերաբերյալ հաղորդված տեղեկությունները։ Շատ են քաղվածաբար վերաշարադրված փոքր ու մեծ հատվածները, սակայն սակավ չեն նաև ուղղակի բառացի առնված մասերը։

Ծանոթանանք բազմաթիվ հատվածներից մի քանիսին, որոնք միանգամայն որոշակի կհաստատեն այս իրողությունը և միաժամանակ որոշ պատկերացում կտան Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրութեան» Վարդան Արևելցու աշխատության համար ունեցած աղբյուրագիտական և բնագրագիտական կշռի ու նշանակության մասին։

| Մատթեոս Ուռհայեցի | Վարդան Արևելցի |
| --- | --- |
| Յայսմ ժամանակի (ՇԻԵ—Ա. Փ.) սպանաւ Վասակ իշխանն Հայոց որդի Գրիգորի Մագիստրոսին և եղբայր տէր Գրիգորիսի. սա էր տուկի յԱնտիոք քաղաքին. սա սպանաւ ի շուկայ փողոցին Անտիոքայ ի ձեռն նենգաւոր ազգին Հոռոմոց... և ժողովեցան զօրք նորա ի Կլայն Անտիոքու, և յայնժամ ազատագունդն Վասակայ կոչեցին զՓիլառտոս և տան զԱնտիոք ի ձեռս նորա։ ...Եւ յայնժամ բռնակալեցաւ Փիլառտոսն ի վերայ Անտիոքայ և առեալ վրէժ արեան մեծին Վասակայ Պալհաւունւոյ։ (էջ 213—214) | Ի հինգ հարիւր քսան և հինգ թուին սպանին Հոռոմք զՎասակ իշխանն զեղբայր կաթողիկոսին Վահրամայ, որ էր տուկ Անտիոքու, ի նմին քաղաքի նենգութեամբ. և զօրք նորա ամրացեալ ի Կլայն, ետուն զքաղաքն ի Փիլարտոսն, որ բռնացեալ էր յայնժամ ի վերայ բազում գաւառաց՝ հայ ազգաւ, որոյ առեալ զքաղաքն, խնդրեաց զվրեժ արեան նորա։ (էջ 104)։ |

39 Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 54։
40 Ասողիկ, նշվ. աշխ., էջ 79։
41 Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898։

*Ահա մեկ ուրիշը.*

Մատթեոս Ուռհայեցի

*Իսկ ի թուականութեանն Հայոց ի յամի ՇԽԴ արար ժողով հեծելոց Սուլման որդի Արղուխին և ամիրայն Սամուսատայ Պալտուխն որդի Ամիրխաղէ և յաւուրս հնձոցըն գան ի վերայ Ուռհայոյ։ Եւ Թորոս կուրապաղատն տէրն Ուռհայոյ եղև լցեալ ամենայն իմաստութեամբ... և այնու ոչ կարացին յաղթել քաղաքին։ (էջ 250)։*

Վարդան Արևելցի

*Ի հինգ հարիւր քառասուն և չորս թուին Սուլման որդի Արղուխին, և ամիրայն Սամուսատոյ Պալտուխն՝ որդին Ամիր-Ղազէ՝ գան ի վերայ Ուռհայոյ. և դարձան լի ամօթով, զի կիւրապաղատն Թէոդորոս իմաստութեամբ և քաջութեամբ պահէր զքաղաքն։... (էջ 109)։*

*Ուշագրավ է նաև հետևյալը.*

Մատթեոս Ուռհայեցի

*Յայսմ ժամանակի կատարեցաւ մարգարէութիւն սրբոյն Ներսեսի Հայոց կաթուղիկոսին, զորս վասն Հոռոմայեցւոց ելիցն խօսեցաւ... և բարձրագահ իշխանութեամբ ելեալ գային իշխանք ազգին փռանգաց... որոց էին անուանքն այսոքիկ. Կոնդոփրէ, այր հզօր, որ էր յազգէ թագաւորացն հոռոմայեցւոց, և նորին եղբայրն Պաղտինն։ Այս Կոնդոփրէ էր, որ ունէր զթուրն և զթագն ի հետ իւր Վեսպիանոսի թագաւորին, որ կոտորեաց զԵրուսաղէմ. էր և մեծ կոմսըն որ ասէին Պեմունդ, և Տանգրի քուրորդի նորա, և կոմսն՝ որ ասի Զնճիլ, այր ահարկու և փառաւոր, և Ռապերդն Նորմնդաց կոմսըն, և միւս այլ Պաղտինըն, գայր և յետոյ կոմսն՝ որ ասի Ճօսլին, այր հզօր և քաջ։ Արդ այսքան արք հզօրք և պատերազմողք... (էջ 253—254)։*

Վարդան Արևելցի

*Յայսմ ժամանակի լնու բան մարգարէութեան սուրբ Հայրապետին Ներսիսի՝ որ վասն ելից փռանգացն... Եւ ելանէին արք փառաւորք գլուխք զօրաց բազմաց, որոց անուանք էին այս. Կոնդոփր, և Պաղտոյն՝ եղբայր նորա՝ յազգէ թագաւորաց. զոր ասեն ունել զթագն Վեսպիանու՝ որ աւերեաց զԵրուսաղէմ և մեծ կոմսն Պայմունդ, և Տանկրի քեռորդի իւր, և կոմսն Զնջիլ և Ռոպերտն՝ Որմնդաց կոմսն և միւս Պաղտոյնն, և Ջօսլին կոմսն՝ արք յաղթողք և բազմազօրք։ (էջ—110)։*

*Այս կապակցությամբ հարկ է նշել հետևյալ առանձնահատկությունը։ Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրություն»-ից առնված նյութերը ոչ միայն պատմում են պատմական ընդարձակ ժամանակաշրջանի մասին, ոչ միայն*

շատ են ու մեծ տեղ են բռնում, այլև քիչ են ընդմիջված այլուստ քաղված պատմական տեղեկություններով և ժամանակագրական միանման հաջորդականության մեջ են մայր աղբյուրին համապատասխանաբար։ Միջարկված նյութերը ուշագրավ են հատկապես նրանով, որ շատ քիչ են առնչվում մեզ ծանոթ գրավոր աղբյուրներին և խորհելու առիթ են տալիս։ Այս մասին առանձին խոսք կլինի ստորև։

Այսպիսով, կարող ենք համոզված եզրակացնել, որ Վարդան Արևելցին իր «Հաւաքումն պատմութեան» մի բավականին ընդարձակ մասը (մասնավորապես՝ 104—118 էջերը) շարադրել է գերազանցապես Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրութեան» հիման վրա, հաճախ կատարելով բառացի քաղվածքներ։

Ասորի բարձրաստիճան հասարակական-եկեղեցական գործիչ և անվանի մատենագիր Միխայել Ասորու «Ժամանակագրութիւն»-ը[42] հայ մատենագրության առնչվում է սերտորեն։ Հեղինակն ինքը ծանոթ է հայ ժողովրդի, մասնավորապես Կիլիկյան հայ իրականության, պատմաքաղաքական իրավիճակին, հոգևոր-եկեղեցական և մշակութային կյանքին։ Բարեկամական մերձավոր կապերի մեջ է եղել հայ եկեղեցական բարձր շրջանակների, հատկապես Ներսես Շնորհալու հետ, նրա նման նախանձախնդիր լինելով բյուզանդական եկեղեցա-քաղաքական ճնշումների դեմ ազգային եկեղեցու ինքնուրույնությունը պահպանելու դժվարին պայքարում։ Այսպիսի հեղինակի երկը, որտեղ բավականին շատ է խոսվում հայ ժողովրդի ու Հայաստանի մասին, չէր կարող չարժանանալ հայերի հատուկ ուշադրությանը։ Այդպես էլ եղել է։ Իսկ Վարդան Արևելցին հենց այն անձնավորությունն է, որը Միխայել Ասորու հիշյալ երկին առնչվել է բոլորից առավել։ Նա գործուն մասնակցություն է ունեցել դրա հայերեն թարգմանությանը. ըստ երևույթին կամ՝ հիմնովին մշակել ու խմբագրել է Իշոխ քահանայի կողմից նախապես կատարված հայերեն թարգմանությունը, կամ էլ՝ Իշոխ քահանան է աջակցել Վարդան Արևելցուն սույն թարգմանությունն իրագործելու համար։ Ահա այս նույն երկը կարելի է առանց երկմտության ասել, որ նույնպես «Հաւաքումն պատմութեան» ամենահիմնական աղբյուրներից մեկն է։ Վարդան Արևելցին տեղ-տեղ նախապատվությունը տվել է նրան նույնիսկ այն դեպքերում, երբ ձեռքի տակ ունեցել է հայ հեղինակների երկերը։ Նրանից առնված նյութերը զետեղված են սկզբի էջերում՝ 5—30 և վերաբերում են ըստ մեծի մասին Աստվածաշնչի թեմաներին։

Ինչպես հայտնի է, մեզ են հասել Միխայել Ասորու «Ժամանակագրութեան» հայերեն թարգմանության երկու խմբագրություն, որոնք մեկը մյուսի համեմատությամբ ունեն նկատելի տարբերություններ։ Մեր համեմատություններից պարզվում է, որ Վարդան Արևելցին, թեև հիմնականում օգտվել է Ա* խմբագրությունից, բայց թերևս նաև Բ խմբագրությունից, որովհետև նրա կողմից կատարված քաղվածքները մերթ նման են մեկ՝ այս, մեկ այն խմբագրությանը։ Կարելի է ըստ այսմ ենթադրել, որ Վարդան Արևելցին ձեռքի տակ է ունեցել հավանաբար իր անմիջական գործակցությամբ թարգմանված բնագ-

42 Միխայել Ասորի, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1870, նաև Երուսաղեմի 1871 թ. հրատարակությունը։

* Ա-ով պայմանականորեն նշում ենք Երուսաղեմի 1870 թ., իսկ Բ-ով 1871 թ. հրատարակությունները, միաժամանակ դրանք համապատասխանաբար համարելով Ա և Բ խմբագրությունները։

րի սկզբնական օրինակը, որից հետո իր և մեկ ուրիշի ձեռքով ստեղծվել են հիշյալ երկու խմբագրությունները։ Այս և հարակից հարցերին նույնպես անդրադառնալու ենք այլ առիթով։ Այժմ փորձենք բնագրական կոնկրետ զուգահեռներով ավելի հավաստի դարձնել նաև սույն աշխատության անմիջական աղբյուր հանդիսանալը։

Միխայիլ Ասորի

*Եւ Մագիգիմոս պատրիկացի ասէ. յետ երեսուն ամի ելիցն ի դրախտէն՝ Ադամ ծնաւ զԿայէն և զԿլիմայ քոյր իւր. և երեսուն ամաւ զկնի ծնաւ զԱբէլ և զԱբելուհի՝ քոյր իւր, և յետ հարիւր երեսուն ամի՝ սպանաւ Աբէլ... (Ա. էջ 6)։*

Վարդան Արևելցի

*Ուստի զամս երեսուն ողբացեալ Ադամայ Եւայիւ... և ծնան զԿայէն... քոյր միով Կլիմաս կոչեցեալ, և զկնի երեսուն ամաց ծնան զԱբէլ և զԱբելուհի քոյր նորա։ Եւ զկնի այլ ևս երեսուն ամի սպան Կայէն զԱբէլ... (էջ 5)։*

*Որ Վարդան Արևելցին սույն հատվածը կարող էր քաղել միայն Միխայիլ Ասորու այս երկից, հաստատվում է ոչ միայն նկատվող բառացի բացահայտ նմանությամբ։ Մագիգիմոս Պատրիկացին, որի խոսքերը մեջ են բերված վերոնշյալ հատվածում, ինչքան մեզ հայտնի է, հայ մատենագրության մեջ գոնե այս կապակցությամբ չի հիշատակված։ Այս նույն հատվածի բովանդակությանը ծանոթանում ենք միայն այս երկի շնորհիվ. ինչպես մանավանդ Կայենի՝ Կլիմա կամ Կլիմաս, իսկ Աբելի, Աբելուհի անունով քույր ունենալու մասին։ Մնացածը՝ պարզ է։*

*Բերենք այս կարգի մեկ այլ համեմատություն։*

Միխայիլ Ասորի

*Յայնմ ժամանակի Եթովպացիքն որ լեալ էին հարկատուք Եգիպտացւոցն, և զարին զնոսա. և ապստամբեցին, և եկին ի վերայ Եգիպտացւոց և զարին զնոսա անպատրաստս, և գերեցին և առին զանուանեալ մայրն Մովսիսի, և տարան։ Եւ Մովսէս լեալ զօրավար Եգիպտոսի՝ կռուեցաւ ընդ Եթովպիայ զաւան ամ... և առ զԹագուհի նոցա զԹեսբաս և զՄառի մայր իւր, և դարձաւ յԵգիպտոս քաջ և արի անուամբ։ Եւ նախանձեցաւ ընդ նմա այրն Մառեայ և կամէր*

Վարդան Արևելցի

*Իսկ Եթովպացւոցն՝ որ էին հարկատուք Եգիպտացւոցն՝ ապստամբեալ ասպատակեցին և գերեցին զԵգիպտոս, և զմայրագիրն Մովսէսի. և գնացեալ Մովսէս պատերազմեցաւ տասն ամ. և առ զԹագուհի նոցա զԹեսբաս. և զմայր իւր. և դարձաւ յԵգիպտոս. և նախանձեցաւ ընդ նմա այրն Մառեայ, որ է Թերմոթիս. և ի մեռանելն Մառեայ, Թագեաց զնա Մովսէս։ Եւ առաքեաց այր նորա զՔանթիս չարչարիչն Իսրայէլի սպանանել զՄովսէս, և սպան զնա*

սպանանել զնա, բայց պատկառէր ի կնոջէ իւրմէ։
Եւ մեռաւ Մառի, և թաղեաց զնա Մովսէս, և առաքեաց այրն Մառեայ զՔամեթիս չարչարիչն Իսրայելի սպանանել զՄովսէս՝ և յառաջեաց Մովսէս և սպան զնա և ինքն փախեաւ ի Մադիամ։ (Ա. էջ 42—43)։

Մովսէս և փախեաւ ի Մադիամ...։ (էջ 18—19)։

Բառացի նմանությունն, ինչպես տեսնում ենք, բացահայտ է։ Այս կապակցությամբ գոհանանք հետևյալ վերջին օրինակով, որը ավելի հաստատուն և հստակ կդարձնի մեր համոզումն ու պատկերացումը հիշյալ երկու երկերի առնչությունների մասին։

Միխայիլ Ասորի

Մովսէս լեալ հարիւր քսան ամաց կատարի...։ Եւ առ Յեսու որդի Նաւեայ զգաւազանն և զիշխանութիւն Մովսիսի, և առաջնորդեաց ժողովրդեանն Իսրայելի ամաց քսան և եւթն։ Ի վեցերորդ ամի իշխանութեանն Յեսուայ Դանաւոս եղբայր Եգիպտոսի թագաւորի յիսուն դստերօք զյիսուն որդիս եղբօր իւրոյ կոտորեաց. բայց ի Լինկեայ՝ որ յետ նորա թագաւորեաց՝ սա է յամենայն կողմանց աշացեալն։
Ի տասն և ութերորդ ամին Յեսուայ Փիւնիկս և Կադմոս ի Թեբացւոց Եգիպտոսէ յԱսորիս եկեալ՝ թագաւորեցին Տիւրոսի և Սիդոնի. և անուամբ նոցա կոչեցաւ երկիրն Փիւնիկէ և տուն Կադմեայ։ (Ա, էջ 51—53)։

Վարդան Արևելցի

Աստուածանօթն Մովսէս կատարեցաւ հարիւր և քսան ամաց, և առ զգաւազան նորա Յեսու Նաւեայ ամս քսան և եօթն։ Ի վեցերորդի ամին Յեսուայ Դանաւոս եղբայր Եգիպտոսի թագաւորի Եգիպտացւոց յիսուն դստերօք զյիսուն որդիս եղբօր իւրոյ կոտորեաց, և Լինգոս զերծեալ թագաւորեաց, զոր ասեն ամենայն ուստեք աշացեալ. զի իմաստուն էր։ Յութեւտասն ամին Յեսուայ Փիւնիկս և Կադմոս ի Թեբացւոց յԱսորիս եկեալ թագաւորեցին, և աշխարհն կոչեցաւ Փիւնիկէ, և տուն Կադմեայ։ (էջ 20)։

Որ Կիրակոս Գանձակեցու «Պատմութիւն Հայոց»-ը Վարդան Արևելցու աշխատության համար հանդիսացել է անմիջական աղբյուր, հայտնի է։ Առավել համոզիչ ու մանրամասն այդ ցույց է տվել հատկապես Կ. Մելիք-Օհանջանյանը[43]։ Նշենք նաև, որ Վարդան Արևելցին ինքը այդ մասին անուղղակի վկայություն էլ է թողել[44]։ Ուստի կրկին հաստատելով սույն ճշմարտությունը կու-

43 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1961, աշխատասիրությամբ Կ. Մելիք-Օհանջանյանի, Առաջաբան, էջ Կ-ԿԵ։
44 Վարդան Արևելցի, նշվ. աշխ., էջ 147։

զենայինք պարզապես ավելացնել, որ նկատվածներից բացի, կան և այլ փոխառություններ։ Իսկ մի շարք էջերում առկա փոխադարձ ընդհանրությունները[45], ըստ երևույթին, իրապես կապվում են մի այլ աղբյուրի երկու հեղինակներին էլ ծանոթ լինելու փաստի հետ։ Այս կապակցությամբ ունենք որոշ դիտողություններ, որոնց մասին խոսք կլինի այլ առիթով։

Մինչ այդ մի քանի խոսք անհրաժեշտ ենք համարում ասել հետևյալի մասին։

Բանասիրության մեջ այն տեսակետն է հայտնված, թե իբր Վարդան Արևելցին օգտագործել է նաև Ագաթանգեղոսի, Անանիա Շիրակացու, Թովմա Արծրունու, Սամվել Անեցու, Մխիթար Գոշի համապատասխան պատմագրական երկերը, ինչպես նաև վրաց ժամանակագրությունները։ Մեր կարծիքով, նման որոշակի եզրակացության համար բավարար հիմքեր չկան։ Թեև հիշյալ երկերի և Վարդան Արևելցու աշխատության մեջ նկատելի են որոշ բնագրական ընդհանրություններ, սակայն աղբյուրագիտական մեր որոնումները ցույց են տալիս, որ դրանք ավելի շուտ բխում են հիշյալ երկերին և միաժամանակ Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան»-ը աղբյուր ծառայած այլ պատմագրական հուշարձաններից։

Ագաթանգեղոսի երկի վերաբերյալ արդեն եզրակացրել ենք, որ Վարդան Արևելցին ոչ թե նրանից, այլ Հովհան Մամիկոնյանի (Զենոբ Գլակ) աշխատությունից է օգտվել։ Անանիա Շիրակացուն վերագրված «Ժամանակագրութեան», Թովմա Արծրունու «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի և Մխիթար Գոշի «Կաթողիկոսք և դէպք Աղուանից աշխարհին ի մէջ ԺԲ դարու» պարագային էլ կարող ենք ավելացնել, որ հիշյալ երկերի միևնույն նյութի մասին պատմելը դեռևս դրանց միջև ուղղակի առնչության գոյության ապացույց չէ։ Տվյալ դեպքում բանն այն է, որ այն տողերը, որոնք, ըստ երևույթին, առիթ են տվել ենթադրելու, թե իբր դրանք Վարդան Արևելցու աշխատությանն են փոխանցվել հիշյալ երկերի միջոցով, գալիս են նախորդ հեղինակների՝ Եվսեբիոսի, Մովսես Խորենացու, Սեբեոսի, Ղևոնդի և մեզ չհասած երկերից։ Այնպես որ, կարծում ենք, հիշյալ երկերը Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» աղբյուրների շարքը դասելու բավարար հիմքեր իրոք որ չկան։

Ինչ վերաբերում է Սամվել Անեցու «Ժամանակագրութեան»-ը, պետք է ասել, որ այն նաև իր ընդգրկած ժամանակաշրջանով և մասամբ կառուցվածքային բնույթով, բավարար ընդհանրություններ ունի Վարդան Արևելցու երկի հետ։ Մի շարք դեպքերում, ինչպես ասենք Աստվածաշնչյան սերունդների, հայ և այլ ժողովուրդների թագավորների, կայսրերի, եկեղեցական պետերի վերաբերյալ ժամանակագրական ցուցակների, սասունցիների, Ապուսեթի սպանության, Բուղայի չարագործությունների, Աշոտ Երկաթի 8 տարվա թագավորության, Վահան Բաղացեցու կաթողիկոսության, ապա «Վրաց դաշնագիր» լինելու պատճառով՝ գահից զրկվելու, փոխարենը Ստեփանոսին գահ բարձրացնելու, Դիոգենես և Միքայել կայսրերի, Մանազկերտի կռվի ու այլ իրադարձությունների վերաբերյալ հատվածներում դրանք, թվում է, տարակուսելի չեն։ Սակայն մանրամասն քննությունից ավելի հավանական է դառնում, որ այդ ընդհանրությունները պայմանավորված են ոչ թե երկու երկերի ուղղակի

45 Հմմտ. Կիրակոս Գանձակեցի. նշվ. աշխ., էջ 71, 76, 85—87, 89 և այլն, Վարդան Արևելցի. նշվ. աշխ., էջ 88—89, 90—91 և այլն։

առնչությամբ: Դարձյալ իրողությունն այն է, ըստ մեզ, որ Սամվել Անեցին տվյալ հատվածների համար օգտվել է Աստվածաշնչից, Եվսեբիոսի, Մովսես Խորենացու, Սեբեոսի, Ղևոնդի, Հովհաննես Դրասխանակերտցու և այլ մեզ հայտնի գրավոր աղբյուրներից, Կիրակոս Գանձակեցին՝ Սամվել Անեցու աշխատությունից, իսկ Վարդան Արևելցին՝ այս բոլորից, բայց ոչ՝ Սամվել Անեցու երկից: Համենայն դեպս, լիովին հավաստի հիմք չկա պնդելու, թե Վարդան Արևելցին օգտագործել է Սամվել Անեցու «Ժամանակագրություն»-ը:

Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» մեջ բավականին շատ փաստագրական տեղեկություններ են պահպանված Վրաստանի քաղաքական պատմության, մանավանդ XII—XIII դարերի ընթացքում Վրաստանի ռազմաքաղաքական հզորացման, տնտեսական և հոգևոր-մշակութային վերելքի տարիներին տեղի ունեցած իրադարձությունների վերաբերյալ: Այս իրողությունը ևս վաղուց է գրավել մասնագետների ուշադրությունը: Մ. Բրոսսեն իր վերոնշյալ ֆրանսերեն աշխատության մեջ ներգրավել է այդ բոլոր տեղեկությունները[46]: Հարկ է այս կապակցությամբ հիշել նաև Լ. Մելիքսեթ-բեկի աշխատանքը[47]: Հ. Մանանդյանը և ուրիշներ ևս դրանք օգտագործել, մեկնաբանել ու գնահատել են: Այնպես որ, դրանց պատմաճանաչողական արժեքի մասին որոշակի պատկերացում գոյություն ունի, սակայն բանասիրության և աղբյուրագիտության տեսանկյունից դեռևս չեն հետազոտված:

Պարզ է, որ այդպիսով Վարդան Արևելցու սույն երկը վրաց XII—XIII դարերի ժամանակագրություններին բովանդակությամբ հաճախ է առնչվում, բայց և այնպես առ այսօր դեռ չի ճշտված, թե այդ աղերսը անմիջակա՞ն է, արդյոք, թե միջնորդաբար է ստեղծված, կամ, պարզապես, բովանդակության ընդհանրության արդյունք է: Դժվար է որոշակի պատասխանելը, առկա նմանությունները ստույգ եզրակացության համար բավարար չեն: Բացի այդ նա օգտագործել է նաև այն հայ աղբյուրները, որոնք պարունակել են հարուստ տեղեկություններ վրաց և Վրաստանի, հայ-վրացական սերտ առնչությունների մասին: Հիշենք նաև, որ նա ապրել և գործել է այնպիսի մի ժամանակաշրջանում ու երբեմն Վրաստանին մերձակա վայրերում, որ կարող էր ականատես ու ականջալուր լինել հասարակական շատ իրադարձությունների: Այնպես որ, Վարդան Արևելցին հիշյալ հայ աղբյուրներից տեղեկություններ փոխ առնելով և մասամբ ուրույնաբար իր լսած ու տեսած համապատասխան իրողությունները դրանց միահյուսելով վրաց ժամանակագրության հետ ստեղծել է այն աղերսը, որը առիթ է տվել ենթադրելու, որ նա իբր ուղղակի օգտվել է վրաց ժամանակագրություններից: Բայց այդ, ինչպես արդեն ասացինք, հավաստի հիմքեր չունի, և մեզ ավելի հավանական է թվում, թե նա վերոնշյալ միջոցով է միայն հնարավորություն ունեցել պատմելու վրաց և Վրաստանի մասին:

Այսքանը Վարդան Արևելցու կողմից օգտագործված պատմագրական բնույթի մեզ հասած աղբյուրների կապակցությամբ: Այլ բնույթի ու բովանդակության մեծ ու փոքր աղբյուրներին կանդրադառնանք առանձին, ինչպես սկզբում նշել ենք, այս կարգի մի շարք հարցերի հետ միաժամանակ:

---

46 *M. F. Brosset*, Additions et eclaircissements..., բազմաթիվ էջերում:

47 Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա., Երևան, 1934, էջ 130—131, 196, 211, 220 և այլն, հատ. Բ., Երևան, 1936, էջ 25—28, 31, 32 և այլն:

ПАЙЛАК АНТАБЯН

# ИСТОЧНИКИ «ИСТОРИИ» ВАРДАНА АРЕВЕЛЦИ


## (Резюме)

Результаты, достигнутые по сей день в филологии, неудовлетворительны с точки зрения сколько-нибудь убедительного источниковедческого анализа «Истории» Вардана Аревелци (XIII в.). В этой связи специальная исследовательская работа еще не проводилась, за исключением отдельных высказываний по частным вопросам.

Указанное историческое сочинение, имеющее широкий хронологический и географический охват, естественно связано с большим числом источников. Этим еще больше подчеркивается необходимость и полезность источниковедческого исследования. Чрезвычайно трудно дать определенный ответ на все вопросы, связанные с проблемой источников памятника, и поэтому в данной статье автор ограничился лишь изучением вопроса непосредственного или опосредованного использования первоисточников Варданом Аревелци.

На основе скрупулезного источниковедческого анализа в статье установлены и уточнены все те первоисточники, которыми пользовался Вардан Аревелци. Выясняется, что для последнего источником служили соответствующие сочинения почти всех предшествующих армянских историков. Непосредственно были использованы историографические сочинения Мовсеса Хоренаци, Лазара Парпеци, Павстоса Бузанда, Себеоса, Мовсеса Каланкатуаци, Левонда, Ованнеса Драсханакертци, Ухтанэса, Степаноса Таронаци (Асохика), Матэоса Урхаеци, Михаила Сирийца, Киракоса Гандзакеци. В числе непосредственных первоисточников Вардана Аревелци Библия, а также «Хронология» Евсевия Кесарийского.

Не имеют фактической основы или еще нуждаются в дополнительной аргументации предположения об использовании Варданом Аревелци исторических сочинений Елише, Агатангелоса, Самвела Анеци, а также «Грузинской хронологии». Хотя и имеется определенная общность в сообщениях на одну и ту же тему между ними и «Собранием истории» Вардана Аревелци, но эта общность является следствием связей с другими источниками.


P. P. ANTABIAN

# LES SOURCES DE L'"HISTOIRE" DE VARDAN AREVELTSI


## (Résumé)

Les recherches philologiques accomplies jusqu'à présent ne sont point satisfaisantes du point de vue d'une analyse tant soit peu convaincante des sources de l'"Histoire" de Vardan Arévеltsi (XIII[e] siècle).

Outre quelques jugements relatifs à un certain nombre de questions particulières, aucune recherche spéciale n'a été consacrée à ce sujet.

L'oeuvre historique en question, sa chronologie et sa géographie supposent naturellement un grand nombre de sources. Cela souligne une fois de plus la nécessité et l'utilité d'une recherche sur ces sources. Il est extrêmement difficile de donner une réponse précise à toutes les questions liées au problème des sources de cette oeuvre, c'est pourquoi l'auteur de l'article se limite seulement à l'étude de la question de l'utilisation directe ou indirecte des sources par Vardan Aréveltsi.

Une analyse scrupuleuse des sources a permis d'étabiir et de préciser toutes les sources utilisées par Vardan. Il apparaît que ce dernier s'est servi des oeuvres de presque tous les historiens arméniens qui lui sont antérieurs. Il a eu directement recours aux oeuvres de Movses Khorénatsi, de Ghazar Parbétsi, de Faust de Byzance, de Sébéos, de Movses Kalankatvatsi, de Ghévond, de Hovhannes Draskhanakertsi, d'Oukhtanes, de Stépanos Taronatsi (Assoghik), de Mathévos Ourhaétsi, de Michel le Syrien, de Kirakos Gandzakétsi. Parmi les sources directes de Vardan Aréveltsi on peut citer aussi la Bible et la "Chronique„ d'Eusèbe de Césarée.

La supposition concernant l'utilisation par Vardan Aréveltsi des oeuvres historiographiques d'Eghiché, d'Agathange, de Samvel Anétsi, ainsi que de la "Chronologie géorgienne„, n'est pas fondée ou doit être encore argumentée. Bien que l'on observe des points communs entre les témoignages de ces auteurs et le "Recueil d'Histoire„ de Vardan Aréveltsi quand ils touchent les mêmes sujets, cette communauté est le résultat de la communauté leurs sourcees.